

# Ձմեռը

ՍՎԵՏԼԱՆԱ ԱԲԱՋՅԱՆ

## ՁՅՈՒՆԸ

Մաղում է կամաց ձյունը երկնքից,
Իջնում ծառերի ճյուղերին բարակ,
Մի փոքրիկ աղջիկ բռնած մոր ձեռքից՝
Մանկապարտեզ է շտապում արագ:

...Իջնում է ձյունը՝ պաղ, ալիք-ալիք,
Ծածկում անշշուկ ծառերն սպիտակ,
Մոր ձեռքից բռնած մի ճերմակ աղջիկ
Քայլում է անհոգ փաթիլների տակ:

Այնքա՜ն թախիծ կա աչքերում ամպի,
Կա ժպի՜տ այնքան՝ մեղմ, բարեհամբույր,
Այնքա՜ն ձյուների բլուրներ անբիծ,
Այնքա՜ն երանգներ ու այնքա՜ն փրփուր:
Կան տրտում դեմքեր ու կերպարանքներ,
Տաք-տաք շողեր կան աչքերում շիկնած,
Այնքա՜ն կուտակված ծով արտասուքներ
Ու այնքա՜ն գգվանք՝ թևերում հոգնած...
Բյուրեղյա ցողեր ունի բազմագույն,
Սրտի տրոփյուն ու շնչառություն:

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

## ԼԵՈՆԻԴ ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ՍՏԵՓԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

«Իմ մանկությունը դժվարին է եղել, որովհետև համընկել է պատերազմի տարիներին,— գրել է Լեոնիդ Ենգիբարյանը:— Առաջին բանը, որ ես տեսել եմ, հոկեյ, ֆուտբոլ կամ հեռուստացույց չէր, այլ պատերազմն էր՝ տագնապի շչակի ոռնոց, զինվորական երգեր, լուսամուտների թղթե խաչուփառեր, հացի հերթեր, փամփուշտի դատարկ պարկուճներ, Սովինֆորմբյուրոյի հաղորդագրությունները, որոնք բոլորը լսում էին ինչպիսի՜ հուզմունքով...

Պետք է ասեմ, որ այդ ամենը շատ բանով ձևավորել են ինձ...»

Նա չէր ապրել մանկության թովիչ հեքիաթը և շատ վաղուց իր երևակայությունն էր փորփրում՝ այնտեղ գտնելու կորցրածը: Ուժեղ լինելու բնական ձգտումը նրան տարավ բռնցքամարտի պարապմունքների: Հետո ընդունվեց ֆիզկուլտուրայի ինստիտուտ, հասավ երկրորդ կուրս, սակայն չէր հրապուրվում ընտրած մասնագիտությամբ: Նա ուզում էր ինչ-որ կարևոր բան ասել մարդկանց իր և միլիոնավոր իր նմանների ապրած տառապանքի մասին... Ուզում էր մարդկանց տանել իր պատրանքների աշխարհը:

Եվ Լեոնիդ Ենգիբարյանը թողեց ինստիտուտը, գնաց Մոսկվայի կրկեսային և էստրադային արվեստների պետական ուսումնարան:

Ընդունելության քննությունների ժամանակ նա ցուցադրեց «Բռնցքամարտիկը» էտյուդը: «Դա այնպիսի թարմ ու անմիջական, կոմիկական վիճակների նուրբ զգացողությամբ հագեցած խաղ էր, որ բոլորըս՝ քննական հանձնաժողովի մասնակիցներս, կլանված նայում էինք,— գրում է Յուրի Բելովը:— Լյոնյան այն ժամանակ չուներ, իհարկե, կրկեսային արտիստին անհրաժեշտ վարպետություն, բայց ուներ շատ թանկ ու հազվադեպ բան. անմիջականություն, անկեղծություն և մեծ լրջություն»:

Երբ կրկեսային բեմահարթակ մտավ մեծ կոշիկներով, գծավոր վերնաշապիկով, տաբատի մի փոկը

ուսով գցած տղան, մարդիկ նրանից սպասում էին թերևս միայն զվարճալիք ու ծիծաղ: Իսկ երբ ներկայացումից հետո տուն էին գնում, իրենց հոգում տանում էին «Երգիչը», «Ծանրամարտիկը», «Հովանոցը», «Լապտերը», «Բռնցքամարտիկը», «Ջութակը» էտյուդների ու մնջախաղային պատմությունների առաջացրած լուսավոր թախիծը: Երբ մարդը թախծում է ինչ-որ բանի համար, որն անմիջականորեն իրեն չի վերաբերվում, նրա մեջ խոսում է խիղճը, մարդկային մաքուր խիղճը: Այդ էր բեմահարթակ բերել կրկեսային նոր աստղը՝ Լեոնիդ Ենգիբարյանը:

Տարիներ անցան: Նա Հայկական ՍՍՀ ժողովրդական արտիստ էր, միջազգային մրցույթների դափնեկիր, բայց տղամարդկային, ճարպիկ նրա մարմնի մեջ ապրում էր նույն երեխան, որն ուզում էր աշխարհը լինի հեքիաթ և մարդը չիմանա՝ ինչ է պատերազմը, քաղցը, սարսափը, տագնապը:

Նա այն արվեստագետներից էր, որոնց համար կյանքի իմաստը մարդուն ծառայելն էր, մարդու մեջ բարին, մարդկայինը վերհանելը: Նա քսաներորդ դարի զավակն էր՝ այդ մտքի ամենախոր իմաստով: «Գլխավորը կյանքում ինձ համար,— ասում էր նա,— ունենալ պատասխանատվության զգացում այն ամենի նկատմամբ, ինչ կատարվում է մեր շուրջը»: Որովհետև շատ էր սիրում երկիրը՝ «կյանքի կանաչ օրրորոցը», ինչպես ինքն էր ասում, շատ էր սիրում մարդուն՝ երբևէ հանգած «չքնաղ աստղի բեկորին»: Այդ սիրով լի էին նրա մնջախաղային պատմությունները, մանրանկարներն ու նովելները, որոնք առանձին գրքով լույս տեսան Երևանում 1971 թվականին:

Լեոնիդ Ենգիբարյանը մտածող, անվերջ փնտրող արվեստագետ էր և եկավ մի օր, որ թողեց կրկեսային բեմահարթակը: Թողեց՝ ավելի հետաքրքիր ու նոր խոսք ասելու համար: Նա ստեղծեց իր թատրոնը, որը հենց այդպես էլ կոչվում էր՝ Լեոնիդ Ենգիբարյանի Մոսկովյան էքսցենտրիկ թատրոն: Նա ի մի էր բերել էքսցենտրիկայի, մնջախաղի և ծաղրածուական արվեստի ասպարեզներում կատարած տարիների քրտնաջան աշխատանքը: Մեկ թատերաշրջանի ընթացքում այդ թատրոնը տվեց 200 ներկայացում Սովետական Միության 30 քաղաքներում, անցնելով Դուդինկայից մինչև Յալթա, Ուժգորոդից մինչև Կրասնոյարսկ: Եվ ամենուր արժանացավ ջերմ ընդունելության: Այդ հաջողության գաղտնիքը Լեոնիդ Ենգիբարյանի և նրա թատրոնի բերած թարմության և ինքնատիպ արվեստի մեջ էր: Նա մի կողմից խորապես ուսումնասիրել էր աշխարհի նույնատիպ թատրոնների ու հռչակավոր արվեստագետների՝ Ֆրեդ Կարնոյի, Չարլի Չապլինի, Մարսել Մարսոյի լավագույն ավանդույթները, մյուս կողմից փնտրել գտել էր իր հարազատ ակունքը, որը հայոց հինավուրց հողում էր: 1972 թվականի ամառը «Յունեսկո» համամիութենական ռադիոկայանի թղթակցի հետ զրուցելիս ասել է. «Մեր թատրոնը, իհարկե, նաև մնջախաղի թատրոն է: Որպես միմոս ֆրանսիական դպրոցի հետ ես ոչ մի առնչություն չունեմ: Մնջախաղը ինձ համար բուն հայկական ժանր է: Մինչև այժմ հայկական գյուղերում մենք կարող ենք տեսնել մնջախաղի ներկայացումներ, որոնք շատ հին ակունք ունեն: Ինձ համար շատ օգտակար բաներ եմ քաղել պրոֆեսոր Գոյանի՝ հայ թատրոնի հայտնի մասնագետի աշխատություններից»:

Ներկայացումների հիմնական մտքերից մեկն այն էր, որ ժամանակակից մարդը՝ 70-ական թվականների մարդը, զարմանալի բազմազան է, կատարյալ՝ ֆիզիկապես ու բարոյապես: Գլխավոր հերոսը ընկնում է նաև ծիծաղելի դրությունների մեջ, չէ՞ որ նրանց ներկայացումը կոմիկական էր:



Նկարչական ձևավորումը և լուսավորությունը շատ պարզ էին, որովհետև թատրոնը անվերջ շրջագայության մեջ էր: Ենգիբարյանը նայում էր ավելի հեռուն և մտածում էր ներկայացումների մեջ օգտագործել նաև գունային երաժշտություն: Առանձին համարներում հեքիաթային-երազային կոլորիտ ստեղծելու նպատակով, օգտագործել է կանաչ լույսը, կանաչ լապտերիկը: Իզուր չէ, որ Ենգիբարյանը այդ կանաչ լապտերիկը համարել է ներկայացման երկրորդ գլխավոր հերոսը, համարել է կախարդական, կարծես Անդերսենի հեքիաթներից բերված: Նա մեծ կարևորություն է տվել նաև երաժշտությանը և ներկայացումը հարստացրել է նվագակցությամբ, հատկապես ֆլեյտայի նրբին մեներգներով:

«Ես կարող եմ պատմել և նույնիսկ ցույց տալ, ինչպես է դա արվում, որովհետև ես եղել եմ Երևակայության երկրում: Գլխավորն այն է, որ ձանձրալի չլինի, իսկ հետո...

Վերցրեք, օրինակ, շատ հասարակ մի բան, ասենք՝ ցախավել: Հիմա այն պտտեք ձեռքի մեջ: Ինչպես տեսնում եք՝ դա արդեն ոչ թե ցախավել է, այլ կիթառ է: Այն գցեք ուսին: Ինչպես տեսնում եք՝ այն արդեն հրացան է: Ձեր ցախավելը կարող է դառնալ տապար և դուք հինգ հարյուր տարի ետ կթռչեք: Այնուհետև հանկարծակի այն կարող է դառնալ հոկեյի ձող և մի վայրկյան անց՝ մարզասերի մի պլակատ: Բայց ահա հոկեյի մրցությունն ավարտվել է և ձեր ցախավելը նորից սովորական ցախավել է, որով տրիբունաններն է ավլում տարեց մարդը...

Ցախավելին տիրապետելուց հետո, վերցրեք ավելի բարդ բան, ասենք՝ փողոցային լապտեր... Դա կարող է դադնալ երազանք և տանել հեռո՜ւ-հեռո՜ւ...

Եթե կստացվի նաև դա, այն ժամանակ դուք կարող եք վերցնել աստղային երկինքը, որ շատ նման է մաղի, անհավասար անցքերով սև մաղի: Լցրեք դրա մեջ բոլոր ձեր պատրանքները և ցույց տվեք ձեր ընկերներին: Եվ եթե նրանց աչքերում տեսնեք տըխրության լուսավոր կաթիլներ՝ ծիծաղից, որը թախծի հետ է շաղախված, նշանակում է, դուք...

Ինչ որ է՝ գլխավորն այն է, որ ձանձրալի չլինի...»

Այսպես՝ բարի կախարդի պես, նա կերպարանափոխում էր իրերն ու երևույթները, մարդկանց պարգևում ծիծաղ՝ թախծի հետ շաղախված, երազանք՝ կանաչ լապտերի լույսով ողողված...

Ընթացիկ աշխատանքներին զուգահեռ նա նախապատրաստել էր երկրորդ ներկայացումը: Ուզում էր անպայման հարստացնել թատրոնի խաղացանկը, ներկայացումների բովանդակությունը: Միաժամանակ, նա իրեն օտարացած չէր համարում կրկեսից: «Ծաղրածուի իմ ճտքավոր կոշիկները,— ասում էր նա,— կախված են մեխից և ուզած ժամանակ ես դրանք կարող եմ իջեցնել ու հագնել, և նորից բեմահարթակ դուրս կգա գծավոր վերնաշապիկով, տաբատի մի փոկը ուսով գցած տղան...»

Բայց ամռան այդ օրը՝ 1972-ի հուլիսի 25-ին, նրա տաք, անհանգիստ սիրտը սեղմվեց ու կանգ առավ: Մայրը և նրա երբեմնի ուսուցիչ, իսկ հետո մտերիմ ընկեր Յուրի Բելովը, որ մի քանի ժամ առաջ վրա էին հասել, չէին կարողացել հավատալ, որ նա հեռանում է աշխարհից՝ իր սիրած աշխարհից, որի «շուրջը աստղային շուրջպարն է պտտվում»: Հեռացավ ինչպես պայծառ բռնկված ու անսպասելիորեն հանգած աստղ: Եվ երբ նրան տարան Մոսկվայի Վագանկովսկյան գերեզմանատուն, կարծես վերջին մնջախաղն էր խաղում՝ իրեն այնքան հատուկ լըռությամբ և մինչև վերջ...




ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Քամին մոտ վազեց ծաղկին ու ասաց.
— Աշուն է արդեն. մի՛ քնիր, վե՛ր կաց,
Արի քեզ տանեմ երկրներ օտար,
Որտեղ տաք է միշտ՝ ձմեռ թե ամառ:
Քանի դեռ ուշ չէ, ընկերացի՛ր ինձ,
Թե չէ կսառչես դու այստեղ ցրտից:—

Ծաղիկը ասաց.— Թո՛ղ ինձ ու գնա,
Թեկուզ և սառչեմ, այստեղ կմնամ,
Ես չեմ հեռանա ինձ սնող մորից,
Գարնանը այստեղ կծաղկեմ նորից:—
Քամին բարկացած թողեց հեռացավ,
Ծաղիկը թոշնեց, դեղնեց, չորացավ,
Բայց իր սերմերը պահ տվեց հողին,
Որ ձյուների տակ մտնեն անկողին,
Քնեն ապահով, չմրսեն ցրտից
Եվ գարնանն այստեղ կանաչեն նորից:




*ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*

Տանը ամեն ինչ իմ ցանկությանը հակառակ էր ստացվում: Բաժակը, չգիտեմ ինչպես, ձեռքիցս ընկնում կոտրվում էր, ճաշը, որքան էլ որ փորձում էի զգույշ վարվել, թափվում էր ափոոցին, դասագրքերիս կազմերը մաշվում էին ամառային արձակուրդներից շատ առաջ: Եվ այս բոլորի համար, իհարկե, հարկ էր լինում պատասխան տալ: Իսկ իմ միակ պատասխանն այն էր, որ ես լավ էի սովորում. այսինքն հազվադեպ էի «երկուսներ» ստանում և հույս ունեի, թե հայրիկը մի օր ինձ համար հեծանիվ կգնի: Բայց հայրիկն ինձանից դժգոհ ու դժգոհ էր, և ես շարունակ մտածում էի, թե ինչպես արժանանամ նրա գովեստին:

Մի օր իմ սեղանի առաջ նստած դաս էի պատրաստում, երբ մեկ էլ քույրիկս ներս մտավ: Նա մատը դրեց գրքի էջի վրա:

— Սա ի՞նչ է,— հարցրեց նա և ուշադիր նայեց դեմքիս:

— Տառ է,— ասացի ես,— «Գ» տառն է...

— Իսկ սա՞...— մատը մի փոքր առաջ սահեցրեց նա:

— «Ն»,— ասացի ես:

Քույրիկս պատրաստվում էր մի ուրիշ տառի մասին էլ հարցնել, բայց այստեղ մի լավ միտք ծագեց գլխումս: Հանկարծ ես մտածեցի իմ պոքան չար քույրիկին, որի պատճառով շատ պատիժներ էի կրել, սովորեցնել տառերը: Եվ ես իսկույն պատկերացրեցի, թե հայրիկը, մայրիկը կամ տատիկը որքան կուրախանան, իսկ երբ քույրիկս դպրոց գնա, ուսուցչուհին նրան կգովի:

Շատ բաներ մտածեցի, իսկ վերջում հաստատ համոզված էի, որ հայրիկս այս անգամ գոհ կմնա ինձանից և ես կարող եմ համարձակորեն նրան հիշեցնել խոստացած հեծանիվը գնելու մասին՝ լույսերով, զույգ արգելակներով, բռնակները՝ խոյի եղջյուրների նման...

— Աննա՛,— սիրալիր դիմեցի քույրիկիս,— ուզո՞ւմ ես բոլոր տառերն իմանալ:

Նա մի անգամ էլ կրծեց գազարը, նայեց տառերին, ինձ, և ասաց.

— Սովորեցրո՛ւ, ես ուզում եմ, ա՛յ, սա սովորել...

Եվ նա մատը դրեց «Կ»-ի վրա:

— Արի «Ա»-ից սկսենք, սա «Ա» է:

— Սա «Ա» է,— կրկնեց Աննան:

— Իսկ սա՝ «Բ»...

— Իսկ սա՝ «Բ»,— նորից կրկնեց նա:

Ուրախությանս չափ չկար: Ինչպե՞ս մինչև հիմա չէի մտածել այսպիսի բան անել: Աննան չի տրտնջում, և կարելի է հուսալ, որ նա շուտ կսովորի...

Ես հինգ տառ սովորեցրի և վերադարձա «Ա» տառին:

— Ուրեմն սա ի՞նչ է,— «Ա» տառը ցույց տալով՝ հարցրեցի ես:

Աննան անկարող հայացքով ինձ նայեց:

— Չգիտեմ,— ասաց նա:

Ա՜յ քեզ բան... Չէ՞ որ քիչ առաջ ասացի:

— «Ա» է,— խիստ ձայնով ասացի ես,— իսկ սա «Բ» է, բ-բադիկ:

Քույրիկս հեռացավ ինձանից, ու մինչ ես հուսահատ մտածում էի, թե ինչպես կարող եմ նրան գրավել, նա վերադարձավ, բերելով իր ռետինե բադիկը:

— Բադիկը սա է,— ասաց նա՝ խաղալիքը դնելով սեղանին:

Այստեղ ես գլխի ընկա, թե ինչպես կարելի է տառերը սովորեցնել: Կնկարեմ բադիկ, գնդակ, և տառերը կգրեմ կողքին: Ես իսկույն վերցրի թուղթն ու մատիտը և սկսեցի նկարել ու գրել, իսկ Աննան գնաց և խորանարդիկները բազմոցին լցնելով՝ սկսեց բադիկի համար տուն պատրաստել... Ես այն է, ուզում էի նրա վրա գոռալ ու ինձ մոտ կանչել, երբ հանկարծ մի հրաշալի բան հիշեցի, որ չգիտեմ երբ ու որտեղ էի տեսել, բայց մի՞թե կարևորը դա էր: Կարևորն այն էր, որ ես հիշեցի, թե ինչ պիտի անեմ: Ես թաքուն վերցրեցի քույրիկիս խորանարդիկներից մեկը և այն գրքույկներից, որոնց նկարները նրան վաղուց արդեն ձանձրացրել էին, և նա արդեն պատռում, մանրացնում էր ձյան նման ու պատշգամբից շաղ տալիս ցած, հենց այնպես, ուրախանալու համար:

Ես կտրեցի աթոռի, բադիկի, գնդակի ու մի քանի ուրիշ նկարները և սոսնձով կպցրեցի խորանարդիկի կողերին: Ապա դրանց կողքին գրեցի տառերը: Ա՜յ թե ստացվում էր... Որպեսզի քույրիկս ավելի հրապուրվեր, ես գունավոր մատիտներով մի

քանի նախշեր արեցի խորանարդիկի վրա ու վերջապես հեռվից ցույց տվեցի նրան:

Նա ուրախացած մոտս վազեց:

— Սա ի՞նչ է,— հարցրեց նա:

— Սրանք տառերն են, երբ ասում ես «Բ», հետո պիտի ասես՝ բադիկ, իսկ երբ՝ «Գ», ուրեմն՝ գընդակ, պա՞րզ է...

— «Բ»՝ բադիկ, «Գ»՝ գնդակ,— կրկնեց քույրիկս...

Ես ուրախությունից համբուրեցի նրան: Անցյալ երեկ չէի սպասում, որ իմ տզտզան քույրիկը կարող է որևէ բան սովորել:

Այսպես, «Ե»՝ ելակն էլ սովորեցրի, որը, ի դեպ, նրան շատ դուր եկավ ու անմիջապես ելակ ուզեց: Իսկ ես իսկույն ասացի, որ երբ նա բոլոր տառերը մայրիկի, հայրիկի ու տատիկի մոտ արտասանի, այն ժամանակ մայրիկը կգնա շուկա և նրա համար կարմիր ելակ կգնի...

Ջ-զանգ սովորեցնելու ժամանակ հանկարծ նըկատեցի, որ դպրոց գնալու ժամից տասնյոթ րոպե անցել է: Պատուհանից նայեցի դուրս: Փողոցով այլևս ոչ մի դպրոցական չէր անցնում, իսկ տատիկը կանաչի վաճառող ինչ-որ պառավի հետ էր խոսում: Ես իրար անցա ու պայուսակիս մեջ խոթելով մի քանի դասագիրք, տանից դուրս թռա: Տատիկն այնքան տարված էր, որ ինձ չնկատեց, իսկ ընկեր Սարգսյանից թաքնվել չկարողացա:

— Սկսել ես ուշանալ,— հանդիմանեց նա և այն է, ուզում էր ասել՝ վաղը ծնողիդ կբերես, ես ասացի.

— Մայրիկս հիվանդ էր, ես տատիկին էի օգնում:

Այդքանը: Հետո ամբողջ դասի ընթացքում մտածում էի, թե ինչպես անեմ, որ քույրիկս տառերը շուտ սովորի: Եվ այստեղ հիշեցի, որ խորանարդիկը այդպես էլ մնաց սեղանին: Անշուշտ տատիկին կպատմի, տատիկին էլ նորություն է հարկավոր հայրիկին ու մայրիկին պատմելու համար: Մինչդեռ ես ուզում էի, որ նախօրոք ոչ ոք չիմանար:

Այդ պահին ընկեր Սարգսյանն ինձ դաս հարցրեց: Գրատախտակի մոտ ես համոզվեցի, որ վերնագիրն իսկ չգիտեմ: Իզուր էլ համարձակ մոտեցա: Ընկեր Սարգսյանն ուրախությամբ սպասում էր: Նա հետո այնպես զայրացավ, որ օրագրի երկու քառակուսիների մեջ հազիվ տեղավորեց խոշոր «երկուսը»: Այնուհետև ես տխուր տուն եկա: Իսկ հայրիկը պարզ է, իր երեկոյան անելիքը չմոռացավ և պահանջեց օրագիրս: Այս խոշոր «երկուսը» նրան շատ զարմացրեց, իսկ ես մտքումս զայրացա ընկեր Սարգսյանի սովորության վրա, «հինգերը» նշանակում է հազիվ մի քառակուսու կեսի չափ, իսկ «երկուսները», ահա այդպես... ճիշտ և ճիշտ տատիկի մեծ շերեփի նման:

— Այս ի՞նչ է նշանակում,— հարցրեց հայրիկը:

Ես ցանկացա մի բան հորինել, բայց այդ պահին տատիկը ներս մտավ, որովհետև հայրիկի ձայնը շատ խորհրդավոր էր և նա անպայման պիտի իմանար, թե ինչ է պատահել: Ու մինչ ես մտածում էի, նա ակնոցները դրեց ու քիթը մոտեցրեց օրագրիս: Կարծես թե այնտեղից մեկը հարվածեց նրա ակնոցներին, և նա ակնոցները հանելով՝ ասաց.

— Դասերը պատրաստելու փոխարեն, առավոտյան Աննային տառերն էր սովորեցնում:

— Ուրեմն Աննային տառե՞ր ես սովորեցրել,— առանց բարկանալու հարցրեց հայրիկը:

Նա ուշադիր Աննային էր նայում, կարծես նոր էր տեսնում, որ նա մեծացել է:

— Իսկ դու որևէ բան հիշո՞ւմ ես,— դիմեց նրան հայրիկը:

— Ես սովորել եմ,— ասաց Աննան,— Լևոնն ինձ սովորեցրել է, թե ինչպես են տառ պատրաստում:

— Սովորում,— ուղղեց հայրիկը,— ապա տեսնեմ...

— Պատրաստում,— պնդեց Աննան ու գրպանից հանեց խորանարդիկը, որն անճանաչելի էր դարձել: Դրա վրա նա սոսնձով կպցրել էր իմ դասագրքերից կտրտած անթիվ տառեր:

ՎԱՐԱԶԴԱՏ ԲԱԳՐԵՎԱՆԴՑԻ

## ՇՆՈՐՀՔ

Ուղտը ուղտին լեզվով անուշ
Առաջարկեց մի բերան փուշ,
Հետն էլ ասաց.— Ինձ կներես,
Որ փշով եմ պատվում ես քեզ:

Ուղտը ժպտաց.— Քո՛ւյր իմ անուշ,
Քաղցր լեզվով տված փուշն էլ
Դառնում է նուշ:

## ԱՌՎԱԿԻ ՏՐՏՈՒՆՋԸ

Սեփական ուժով
Դեռ տեղ չհասած,
Նա սրտի ցավով
Ափերին ասաց.
— Մենք՝ առվակներս,
Տե՛ս, ո՞ւր ենք կորչում,
Ծովն իմ անունով
Ինչո՞ւ չեն կոչում:

*Լրացավ ականավոր գիտնական Հակոբ Մանանդյանի ծննդյան 100-ամյակը։ Բազմավաստակ գիտնականի կյանքին ու գործունեությանը և նրա թողած գիտական մեծ ժառանգությանն է նվիրված ստորև տպագրվող հոդվածը, որի հեղինակը՝ Հ. Մանանդյանի սիրելի աշակերտներից, նրա նախկին ասպիրանտ, ինքն էլ վաղուց արդեն ճանաչված գիտնական, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի իսկական անդամ, մեր համբավավոր Մատենադարանի դիրեկտոր ընկեր Լևոն Խաչիկյանն է։*

# ԱԿԱԴԵՄԻԿՈՍ ՀԱԿՈԲ ՄԱՆԱՆԴՅԱՆԻ ԿՅԱՆՔՆ ՈՒ ԳՈՐԾԸ



Գործ՝ վաստակավոր նկարիչ Հ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Սովետական Հայաստանում հայագիտությունն այսօր ծաղկում է ապրում։ Հայկ. ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հասարակագիտական ինստիտուտներում, Երևանի պետական համալսարանում, Մաշտոցի անվան Մատենադարանում և գիտական այլ հաստատություններում աշխատում են հարյուրավոր պատմաբաններ, գրականագետներ, լեզվաբաններ, հնագետներ և այլ մասնագիտության տեր տարեց ու երիտասարդ գիտնականներ, որոնք ուսումնասիրում են մեր ժողովրդի հազարամյա պատմության ընթացքը, նրա կերտած մշակութային հարուստ ժառանգությունը, դարերի խորքից եկող հայոց լեզուն։ Պատմական ժառանգության ուսումնասիրությունն ինքնանպատակ չի կատարվում մեզ մոտ։ Մեր գիտնականները, զինված մարքս-լենինյան գաղափարախոսությամբ, բացահայտում են հայ ժողովրդի անցած պատմական ուղու առանձնահատկությունները՝ ցույց տալիս օտար զավթիչների և սեփական տերերի դեմ ժողովրդի մղած հերոսական պայքարի դրվագները, վեր հանում և ըստ արժանվույն գնահատում գրականության, արվեստի ու գիտության մարզերում մեր նախնիների ստեղծած մնայուն արժեքները։ Այս աշխատանքները կատարվում են ժամանակակից մարդու հոգեկան աշխարհը հարստացնելու, սովետահայ մշակույթի հետագա զարգացումն ապահովելու համար։ Վիթխարի է նրանց ճանաչողական ու դաստիարակչական նշանակությունը։ Եվ եթե մենք այսօր գոհունակությամբ խոսում ենք հայագիտության հաջողությունների մասին, անմիջապես հիշում ենք մեծատաղանդ այն գիտնականներին, որոնք Հայաստանում սովետական կարգերի հաստատման հենց առաջին օրերին տարբեր վայրերից ժամանեցին Հայաստան և, հաղթահարելով մեծ դժվարություններ, սովետական հայագիտության ամրակուռ հիմքերը դրեցին, կերտեցին դասական երկեր, դաստիարակեցին գիտնականների մի նոր սերունդ։ Գրականագետ Մանուկ Աբեղյան (1865—1944), լեզվաբան Հրաչյա Աճառյան (1876—1953), պատմաբան Հակոբ Մանանդյան (1873—1952), ահա այդ գիտնականներից ամենամեծ վաստակ ունեցողների պայծառ անունները։

Այս օրերին լրանում է Հակոբ Մանանդյանի ծննդյան մեկդարյա հոբելյանը. պատշաճ առիթ է ներկայանում մեկ անգամ ևս անդրադառնալու այդ մեծ գիտնականի կյանքին ու ժառանգությանը։

* * *

Հակոբ Համազասպի Մանանդյանը ծնվել է 1873 թ. նոյեմբերի 22-ին, Ախալցիխե քաղաքում: 16 տարեկան պատանին, ավարտելով Թբիլիսիի 1-ին գիմնազիան, մեկնում է Գերմանիա և ընդունվում Իենա քաղաքի համալսարանի պատմա-բանասիրական ֆակուլտետը: Համալսարանն ավարտում է 1897 թ. և, պաշտպանության ներկայացնելով Մովսես Կաղանկատվացու «Աղվանից պատմություն» աշխատության մասին մի ավարտաճառ, ստանում է փիլիսոփայության դոկտորի գիտական աստիճան: Մեկ տարի չանցած, առանց ուսանող լինելու (էքստեռն կարգով) փայլուն քննություններ է հանձնում Պետերբուրգի (այժմ՝ Լենինգրադ) համալսարանի արևելյան լեզուների ֆակուլտետում և ստանում նաև այդ համալսարանի դիպլոմը: Հետագայում (1909 թ.) նույն կարգով նա ավարտում է նաև Դորպատի (այժմ՝ Տարտու) համալսարանի իրավաբանական ֆակուլտետը: Այսպիսով, երիտասարդ տարիներին եվրոպական գիտական մտքի կենտրոններում, համառ աշխատանքի գնով Մանանդյանը ձեռք է բերում խորը գիտելիքներ, տիրապետում հին և նոր մի շարք լեզուների, յուրացնում գիտա-հետազոտական աշխատանքներ կատարելու առաջավոր մեթոդները և վերադառնում հայրենիք՝ իր ժողովրդին ծառայելու համար:

Ցարական Ռուսաստանի հետամնաց ծայրամասերից մեկը հանդիսացող Հայաստանում այդ ժամանակ չկային գիտական աշխատանքով զբաղվելու բարենպաստ պայմաններ: Երիտասարդ գիտնականն ստիպված ուսուցիչ է դառնում Էջմիածնի Գևորգյան ճեմարանում, դասավանդում գերմաներեն և հին հունարեն լեզուները, ինչպես նաև հին հունական գրականություն ու փիլիսոփայության պատմություն:

Էջմիածնի Մատենադարանում էր պահվում այն ժամանակ հայ հին գրչագիր մատյանների ամենախոշոր հավաքածուն: Հ. Մանանդյանը, Հ. Աճառյանի հետ, սկսում է տաժանակիր մի աշխատանք՝ հին ձեռագրերի էջերից հավաքել վարքագրական անհայտ բոլոր նյութերը, քաջ գիտակցելով, որ նրանց մեջ կան ժողովրդի կենցաղի, գաղափարախոսության ու առօրյա կյանքի տարբեր երևույթների մասին ուշագրավ տվյալներ: Երկու երիտասարդ գիտնականների համատեղ ջանքերով 1902 թ. լույս է տեսնում «Հայոց նոր վկաները» ժողովածուն՝ վարքագրական խիստ արժեքավոր նյութերով:

Այս աշխատանքին զուգընթաց Հ. Մանանդյանը զբաղվում է հայ իմաստասիրության պատմության հուշարձաններով և հիմք դնում հայ փիլիսոփայական գրականության գիտական ուսումնասիրությանը: Մինչ այդ իշխում էր այն տեսակետը, թե միջնադարյան հայկական ձեռագրերում առկա փիլիսոփայական նյութերի մեծագույն մասի հեղինակը՝ Դավիթ Անհաղթ փիլիսոփան է եղել: Աղոտ պատկերացում կար այդ գիտնականի ապրած ժամանակաշրջանի և ժառանգության մասին:

Բանասիրական ու լեզվաբանական խորազնին ուսումնասիրություններ կատարելով, Հ. Մանանդյանը շարադրում է Դավթի մասին մի ուսումնասիրություն, որով պարզվում են շատ թյուրիմացություններ և հայ փիլիսոփայության պատմությունը դրվում է գիտական ուղու վրա: Մեծ արժեք են ներկայացնում նաև նույն այս տարիներին Մանանդյանի աշխատասիրությամբ հրապարակված իմաստասիրական-թարգմանական բնագրերը (Նոննոս, Էլիաս), որոնք կարևոր դեր են կատարել միջնադարում, նպաստելով հայ գրականության համապատասխան բնագավառների զարգացմանը: Թարգմանական գրականության առանձին հուշարձանների հրատարակությամբ (այս բնույթի աշխատանքներ Մանանդյանը կատարել է նաև հետագայում) նախադրյալներ են ստեղծվում հունաբան կոչվող լեզվի ու մշակույթի գիտական ուսումնասիրության համար, որով զբաղվում է մեր գիտնականը 20-ական թվականներին՝ շարադրելով «Հունաբան դպրոցը և նրա զարգացման շրջանները» դասական ուսումնասիրությունը: (Ծանոթագրության կարգով ասենք, որ հունաբան էին կոչվում 5—7-րդ դարերում հունարենից կատարված այն թարգմանություններն ու նրանց նմանողությամբ գրված հայերեն երկերը, որոնց վրա վիթխարի չափերով զգացվում էր հունարեն բառաստեղծական հնարանքների և շարահյուսության ազդեցությունը):

Հ. Մանանդյանի եռանդուն գիտա-մանկավարժական գործունեությունն Էջմիածնում, ապա Թբիլիսիում երկար չի տևում: Ապրուստի միջոցներ հայթայթելու համար նա ստիպված է լինում տեղափոխվել Անդրկովկասի արդյունաբերական խոշոր կենտրոն՝ Բաքու քաղաքը, և թողնելով ուսուցչությունը՝ զբաղվում է իրավաբանական պրակտիկ աշխատանքով: 1920 թ. Հայաստանում հաստատվում են սովետական կարգեր: Հ. Մանանդյանը տեղափոխվում է Երևան և դառնում է հայկական նորաստեղծ համալսարանի առաջին ռեկտորը, ապա կատարում պատմա-բանասիրական ֆակուլտետի դեկանի պարտականությունները, լինելով միաժամանակ հայ ժողովրդի պատ-

մության հիմնական դասախոսը։

Գիտնականի հետազոտական աշխատանքները նոր թափ են ստանում Սովետական Հայաստանում։ Եվ նա, մարքս-լենինյան գաղափարախոսության բարերար ազդեցությունը կրելով, սկսում է զբաղվել աշխատավոր ժողովրդի տնտեսական և իրավական վիճակի, սոցիալ-տնտեսական կյանքի տարբեր երևույթների, հայկական քաղաքների ու առևտրի, Հայաստանով անցնող միջազգային նշանակություն ունեցող ճանապարհների և հարակից հարցերի ուսումնասիրությամբ, հաղթահարելով բոլոր այն դժվարությունները, որոնք ծառանում են խոպան բնագավառներ մշակող գիտնականների առջև։

1925 թ. սկսած գիտական պարբերականներում և առանձին գրքույկներով լույս են ընծայվում հին Հայաստանի շինականների դրության, արքունի հարկերի և սոցիալ-տնտեսական պատմության բազմաթիվ այլ հարցերի մասին Հ. Մանանդյանի մեծարժեք աշխատությունները, որոնք հետագայում ի մի բերվելով ու նորովի մշակվելով, ամբողջացվում են նրա երկու խոշոր մենագրությունների մեջ՝ «Հին Հայաստանի առևտրի և քաղաքների մասին» (տպ. 1930 թ. ռուսերեն լեզվով) և «Ֆեոդալիզմը հին Հայաստանում» (1934 թ.)։

Տարբեր լեզուներով գոյություն ունեցող սկզբնաղբյուրների մանրակրկիտ ուսումնասիրության ճանապարհով Հ. Մանանդյանը փորձում է բացահայտել հին Հայաստանի սոցիալ-տնտեսական կյանքի զարգացման աստիճանը, որոշել հայկական ֆեոդալիզմի առանձնահատկությունները, պարզել ստրուկների դերը Հայաստանի տնտեսական կյանքում և այլն։ Հ. Մանանդյանի այս բնույթի ուսումնասիրությունները սովետահայ պատմագրության ամենաակնառու նվաճումներից էին և չեն կորցրել իրենց թարմությունն ու գիտական նշանակությունը նաև մեր օրերում։

Հ. Մանանդյանը մեծ նշանակություն էր տալիս պատմության օժանդակ գիտություններին, մասնավորապես պատմական աշխարհագրությանն ու չափագիտությանը։ Նա բազմիցս հայտնել է այն միտքը, որ պատմական դեպքերի թիվն ու ժամանակը ճիշտ որոշելուց ոչ պակաս կարևոր է նաև նրանց վայրն ու տեղը պարզելը։ Դրանով պետք է բացատրել այն հանգամանքը, որ նա բազմաթիվ աշխատություններ է նվիրել հին ու միջնադարյան Հայաստանի պատմա-աշխարհագրական կարևոր խնդիրների լուսաբանությանը, հատուկ մենագրություն գրել Հայաստանի հին ճանապարհների մասին, որոշելով նրանց երթուղիները, ճշտելով կանգառները, և այլն։

Գործնական մեծ նշանակություն ունեն նաև հին Հայաստանի տարածական չափերի և կշռաչափերի մասին Հ. Մանանդյանի դասական աշխատությունները, որոնք հնարավորություն են ընձեռում ճիշտ մեկնաբանելու ոչ միայն Հայաստանի տնտեսական կյանքի երևույթների մասին առկա չափական տվյալները, այլև իրենց նպաստն են բերում հունական և պարսկական մի շարք չափական տերմինների, մետրական արժեքների որոշմանը։

Ակադեմիկոս Հ. Մանանդյանի գիտա-հետազոտական աշխատանքների հիմնական բնագավառների համառոտ այս թվարկումով իսկ բացահայտվում է նրա պայծառ կերպարը՝ որպես բազմակողմանի հետաքրքրությունների և գիտելիքների տեր մի գիտնականի, որ նոր ուղիներ է որոնում իր ժողովրդի հազարամյա պատմության խորազնին ուսումնասիրության համար։ Հետազոտության նյութ դարձնելով հայ մշակույթի պատմության կնճռոտ հարցերը, ուսումնասիրելով հին Հայաստանի տնտեսական կյանքի առանձնահատկություններն ու ժողովրդի սոցիալ-տնտեսական վիճակը, լուսաբանելով Հայաստանի պատմական աշխարհագրության և չափագիտության մութ կողմերը և, վերջապես, մեծապես ընդարձակելով մեր պատմության աղբյուրագիտական բազան՝ ակադեմիկոս Հ. Մանանդյանը ձեռնամուխ է լինում իր գիտական գործունեության հիմնական նպատակի՝ հայ ժողովրդի հին ու միջնադարյան պատմության քննական տեսության իրականացմանը։

1940 թ. հրատարակվում է նրա ուսումնասիրությունների գլուխգործոցը՝ «Տիգրան Բ և Հռոմը» մենագրությունը, այնուհետև ընկնում են լույս ընծայվել «Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության» բազմահատոր աշխատության 1-ին, 3-րդ հատորներն ամբողջությամբ և 2-րդ հատորի մի մասը (մյուս մասերն անավարտ են մնացել)։ Տպագրվում են նաև փոքրածավալ, բայց մեծարժեք ուսումնասիրություններ հայոց գրերի գյուտի, արաբական տիրապետության դեմ հայ ժողովրդի մղած հերոսամարտերի և այլ կարևոր խնդիրների մասին։

Հսկայական այս ժառանգության գիտական նշանակությունը համառոտ մի հոդվածով հնարավոր չէ սպառիչ ներկայացնել։ Մանանդյանի «Քննական տեսությունից» առաջ անշուշտ կային հայոց պատմության առանձին ժամանակաշրջաններին նվիրված արժեքավոր ուսումնասիրություններ, սակայն բացակայում էր հնագույն ժամանակներից մինչև ուշ միջնադար ընկած երկհա-

# ԵՐԳԻԾԱԿԱՆ ՄԱՆՐԱՊԱՏՈՒՄՆԵՐ

## (ՆՄՈՒՇՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲԱՆԱՀՅՈՒՍՈՒԹՅՈՒՆԻՑ)

### ՊՈՒՂԻՆ ՈՒ ԿԻՆԸ

Պուղին անկողնում պառկած հանգիստ խռմփացնում էր, իսկ կինը անքուն նստած երեխային էր օրորում: Երեխան չէր քնում և շարունակ լաց էր լինում:

— Վե՛ր կաց, մի քիչ էլ դու օրորի, չէ՞ որ երեխայի կեսն էլ քոնն է, հոգիս դուրս եկավ,— ասում է կինը Պուղուն:

— Դու քո կեսն օրորի, թող իմ կեսը լաց լինի,— ասում է Պուղին և մյուս կողքին շուռ գալով՝ շարունակում է խռմփացնել:

### ՊՈՒՂԻՆ ԽՐԱՏՈՒՄ Է ՀՈՐԹԻՆ

Պուղին իր երկու հորթերին կապել էր ցցից: Հորթերից մեկը կտրելով պարանը՝ փախչում է: Պուղին ընկնում է ետևից, չի կարողանում բռնել: Վերադառնում է և սկսում է մի լավ ծեծել կապված հորթին:

Մոտիկ կանգնած մարդիկ ասում են.

— Պուղի՛, էդ խեղճն ի՞նչ արեց, ախր փախչողը դա՛ չի, ինչո՞ւ ես դրան ծեծում:

— Ա՜խ, դուք չգիտեք, սրան որ թողնես՝ ինչպե՜ս կփախչի:



գարամյա շրջանի ժամանակակից պատմագրության մակարդակին համապատասխան գիտական շարադրանքը:

Մանանդյանը լրացրեց այդ բացը և լրացրեց մեծ վարպետությամբ՝ շրջանառության մեջ դնելով նոր նյութեր, մանրակրկիտ ու խստապահանջ քննարկման բովից անցկացնելով սկզբնաղբյուրների մեջ առկա տարբեր ու հակասական տվյալները, հայրենասեր գիտնականի դիրքերից քննադատելով բուրժուական ուսումնասիրողների միտումնավոր ու սխալ տեսակետները հայոց պատմության կարևորագույն դեմքերի ու դեպքերի մասին:

Մի բնորոշ օրինակով ցույց տանք Մանանդյանի գիտական սխրանքի էությունը:

Հայոց պետականությունն իր ծաղկումն ապրեց մեր թվականությունից առաջ 1-ին դարում. Տիգրան Բ-ի թագավորության տարիներին Հայաստանը դարձավ Առաջավոր Ասիայի խոշորագույն պետություններից մեկը՝ դեմ դիմաց կանգնելով իր հզորության գագաթնակետին մոտ՝ցող Հռոմեական կայսրության նվաճողական քաղաքականությանը: Տիգրանը մղեց հաղթական պատերազմներ, միավորեց պատմական Հայաստանի հողերը, իր իշխանությունը տարածեց նաև հարեվան մի շարք երկրների վրա, զարկ տվեց քաղաքների ու արհեստների զարգացմանը և այլն: Նրա մասին հունական և հռոմեական աղբյուրներում կան ուշագրավ տվյալներ, որոնք սակայն շարադրված լինելով հակառակորդների դիրքերից, հնարավորություն չեն ընձեռում ճիշտ գնահատելու հայ պետականության դերը այդ ժամանակաշրջանի միջազգային հարաբերություններում: Հռոմի պատմության բուրժուական ուսումնասիրողները (Մոմզեն, Ռեյնակ և այլք) Հռոմի և Տիգրանի գոտեմարտերը ներկայացրել են միանգամայն սխալ դիրքերից: Հռոմին համարելով առաջավոր քաղաքակրթություն ունեցող երկիր, նրանք արդարացրել են ստրկատիրական այդ պետության նվաճումները Արևելքում: Տիգրան Բ-ն նրանց կարծիքով, արևելյան մի բռնակալ է եղել, սովորական մի «բարբարոս», որ իր դաշնակից Միհրդատ Եվպատորի թելադրանքով ու խորհուրդներով փորձել է կանխել Հռոմի հաղթարշավը և այլն:

Տիգրանի մասին գրած իր մենագրության մեջ և «Քննական տեսության» առաջին հատորում Հ. Մանանդյանը կտրականապես մերժեց այս սխալ տեսակետը: Բացահայտելով հունական և հռոմեական սկզբնաղբյուրների կողմ-

## ՔԱՀԱՆԱՆ ՈՒ ՊԱՌԱՎԸ

Քահանան եկեղեցու բեմում կանգնած՝ քարոզ էր կարդում: Մի պառավ կին սկսում է լաց լինել: Մոտը նստողները հարցնում են. «Մայրի՛կ, ինչի՞ ես լաց լինում, քահանան այնպիսի բան չի քարոզում,



որ մարդու լացը գա»: Պառավը պատասխանում է. «Ես մի այծ ունեի, նրա մորուսը շատ նման էր քահանայի մորուսին, ես նրա տված կաթովն էի ապրում, մի քանի օր սրանից առաջ գայլը կերավ, հիմի միտս ընկավ, դրա համար լացս եկավ»:

## ՍԱՐԻ ԾԱՅՐԻՆ ԿԱՄՈՒՐՋ ԿԱՌՈՒՑՈՂ ՊՈՒՂԻՆ

Ժամանակին Պուղին սարի ծայրին սկսում է կամուրջ կառուցել:

— Պուղի՛, էդ ի՞նչ ես անում, չէ՞ որ գետը ձորի միջին է,— հարցնում են նրան մարդիկ:

— Ես կառուցում եմ, գետն էլ խելք ունի՝ թող գա տակովն անցնի,— պատասխանում է Պուղին:

## ՊՈՒՂԻՆ ՈՒԶՈՒՄ Է ԱՆՑՆԵԼ ԳԵՏԻ ՄՅՈՒՍ ԱՓԸ

Գնացին տեսան Պուղին վարարած գետի ափին նստած սպասում է: Ասին՝ «Ինչի՞ ես սպասում»: Թե՝ «Սպասում եմ՝ գետն անցնի, որ հետո ես անցնեմ»:

## ԳՈՂՆ ՈՒ ԱՂՔԱՏԸ

Մեկը գողությամբ էր պարապում: Մի օր գնաց գիշերով մտավ աղքատի տունը: Տան տերը իմացավ, բռնեց գողին ու ասաց. «Ի՞նչ ես փնտրում այստեղ»: Գողն ասաց. «Հարստություն և ունեցվածք եմ ուզում»: Տան տերը ասաց. «Ա՛յ անիրավ, ես ցերեկն եմ փնտրում՝ չեմ գտնում, դու գիշերով ինչպե՞ս պիտի գտնես»:

---

նապահ դիրքորոշումը Տիգրանի նկատմամբ, նա ցույց տվեց նշանավոր այդ միապետի գործունեության իրական դրդապատճառները և նոր լույսի տակ ներկայացրեց Հայաստանի ու Հռոմի պայքարի սոցիալական էությունը: Հայաստանն այդ ժամանակաշրջանում հելլենիստական սոցիալ-տնտեսական հարաբերությունների և մշակույթի ոլորտի մեջ մտած ուժեղ մի պետություն էր, որ դեմ հանդիման էր կանգնել ստրկատիրական Հռոմին՝ պաշտպանելով հելլենիստական քաղաքակրթությունը:

Հ. Մանանդյանը բնութագրում է Տիգրան Բ-ին որպես հեռատես մի գործիչ, որ քաղաքական բարդ իրադրության մեջ կարողանում էր ի շահ հայ պետականության հմտորեն օգտագործել Հայաստանի և հարևան երկրների զինական ու տնտեսական կարողությունը:

Հ. Մանանդյանի «Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության» աշխատության ավարտված հատորների մեջ բազմաթիվ հատվածներ կան, որոնք ճիշտ այնպես, ինչպես Տիգրան Բ-ին նվիրված բաժինը, շարադրված են միանգամայն նոր դիրքերից, հայ ժողովրդի պատմության շատ դրվագների նորովի ու գիտական վերլուծությամբ:

Հ. Մանանդյանը գիտական բեղմնավոր աշխատանքին զուգընթաց, երկար տարիներ Երևանի պետական համալսարանում դասավանդել է հայոց պատմություն, դաստիարակել երիտասարդ պատմաբանների մի քանի սերունդ: Նա ունեցել է նաև ասպիրանտներ, որոնք այսօր արդյունավետ աշխատանք են կատարում հայագիտության տարբեր մարզերում:

Կոմունիստական կուսակցությունն ու սովետական պետությունը բարձր են գնահատել Հ. Մանանդյանի գիտական վաստակը: 1939 թ. նա ընտրվել է ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի իսկական անդամ, իսկ 1943 թ. երբ ստեղծվեց Հայկ. ՍՍՀ գիտությունների ակադեմիան, Մանանդյանը դարձավ նորաստեղծ հայկական ակադեմիայի հիմնադիր անդամներից մեկը:

Ակադեմիկոս Մանանդյանը մահացավ 1952 թ. փետրվարի 4-ին, 79 տարեկան հասակում. թաղված է Երևանի համալսարանի հին շենքի բակում, այն համալսարանի, որի առաջին ռեկտորն էր և հիմնադիրներից մեկը:

Հայ ժողովուրդը երբեք չի մոռանա իր տաղանդավոր զավակ, հայրենասեր գիտնական, ակադեմիկոս Հակոբ Համազասպի Մանանդյանին:



Ժամանակակից աշխարհում, քաղաքակրթության արագ զարգացման հետևանքով, շատ քիչ վայրեր են անձեռնմխելի մնացել։ Այդ հազվագյուտ վայրերից է Գրենլանդիայի հյուսիսարևելյան ափը, որի հետ մեզ ծանոթացնում է նորվեգացի գրող-բնախույզ Յոն Եվերի ստորև տպագրվող ակնարկը։



# ՇՈՒՆԸ ՀԱՍԿԱՆՈՒՄ Է

ՅՈՆ ԵՎԵՐ

— Ինձ մի՛ նայիր։ Ուրի՛շ կողմ նայիր։

Մարդը հրացանի փողով շան դունչը մի կողմ թեքեց։ Շունը խղճալի հաչեց, շարժվեց, բայց նորից գորշ շագանակագույն լուրջ աչքերն ուղղեց տիրոջը։

— Պառկի՛ր։

Բղավոցը չօգնեց. շան հայացքը նախկինի պես ուղղված էր մարդուն։ Շունը նայում էր ուղիղ նրա աչքերի մեջ և կաշկանդում նրա վճռականությունը։ Սեփական անզորությունը մարդուն կատաղության հասցրեց։ Նա ուժեղ հրեց շանը։ Շունը կաղկանձեց, բայց հայացքը չկտրեց նրա աչքերից։ Մարդը հրացանը կախեց պատից։ Ոչինչ, հետո կգնդակահարի։ Երեկ մի քանի անգամ փորձել էր Մագին սպանել, բայց նրա մատը շարունակ հրաժարվել էր ձգանը քաշել։ Նա գիտեր, որ մահը անխուսափելի է. Մագի մահը կյանք կտա և՛ իրեն, և՛ լծասարքի մյուս շներին։ Մի շաբաթից ավելի կենդանի արարածը չի կարող սոված մնալ, սովը նրա մկանները փալաս կդարձնի։

Երբ մարդը խրճիթ հասավ, այդտեղ չգտավ ո՛չ մթերք, ո՛չ վառելիք։ Սկսվել էր ձյունամրրիկը։ Այդ ժամանակվանից հյուսիսային մրրիկը անընդհատ մոլեգնում էր Արևելյան Գրենլանդիայի այդ շրջանում։ Յոթ երկար օր մարդը պառկած էր քնապարկի մեջ, մեծ մասամբ կիսանինջ վիճակում։ Հազվադեպ էր կարողանում քնել։ Հաճելի է մոռանալ սովը և ցուրտը, բայց ավելի դժվար է, երբ զարթնելուց հետո գիտակցում ես քո անզորությունը։ Ամեն օր, ամեն ժամ սովը ավելի ու ավելի էր հյուծում նրան և շներին, այնպես որ դժվար թե կարողանային հաղթահարել մինչև մյուս տնակը եղած երեսուն կիլոմետրը։ Բայց նախքան բոլորը ուժասպառ կլինեին, անհրաժեշտ էր, որ շներից մեկը մահանար։

Նրա ժամը հասել էր։

Լուսանում էր։ Երբ մարդը բացեց դուռը, որպեսզի տան պատից 1—2 փայտ պոկի վառելու համար, առջևում ձյունամրրիկի մեջ երևաց հազիվ երկու մետր տարածություն։ Այնուհետև դատարկություն էր, միայն փաթիլներն էին սպիտակ սատանի ճտերի պես սուրում այս ու այն կողմ։ Մարդը փակեց դուռը, ջարդեց սառցապատ փայտերը և նետեց վառարանի մեջ։ Կրակի լույսով կարելի էր նորից տեսնել Մագիի աչքերը։ Նրանք հետևում էին տիրոջ յուրաքանչյուր շարժմանը։ Ջերմության ավելացման հետ, շունը ավելի էր մոտենում կրակին։ Նա հատակը ավլում էր պոչով, իսկ ականջները ամուր կպել էին գլխին։ Հետո լիզեց տիրոջ ձեռքը։ Այդպես շունը խնդրում է ուտելիք կամ փաղաքշանք։ Կամ էլ՝ կյանք։ Մարդը շոյեց նրա գլուխը.

— Իմ խե՜ղճ...

Բայց շունը ուրախ կլանչոցով չնետվեց դեպի նա, ինչպես անում էր առաջ։ Միայն դունչը դրեց նրա ծնկներին և նայեց աչքերի մեջ։

Բոցը աղմկում էր խողովակում։ Այդպիսի օրերին



Նկ. ՄՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

հրո աստվածը դառնում է անկուշտ: Կարմիր ցոլքերը լուսավորում էին տունը, փայլ նետում պատից կախված բևեռաղվեսի վրա: Ափսոս, չի կարելի այն ուտել, որովհետև թունավոր խայծով է բռնված: Երանի՜ հնարավոր լինի ուտել: Մարդը հրեց շան դունչը:

— Կորի՛ր, Մագի՛: Դու ուղիղ խղճիս ես նայում: Հասկացի՛ր, ուրիշ ելք չկա: Քեզ պետք է զոհեմ, մյուս շները ինձ պետք են: Նրանք քեզնից մեծ են և ուժեղ: Դու խելոք ես, շատ խելոք, կարծես մարդ լինես: Բայց այստեղ, Գրենլանդիայում, դա ոչինչ չարժե. այստեղ պետք չեն խելոք շներ: Շները պետք է աշխատեն և քաշեն սահնակը: Այստեղ գնահատվում է միայն կոպիտ ուժը, և քո խելքը ոչինչ չարժե: Թույլը պետք է սպանվի, որպեսզի պահպանի ուժեղների կյանքը: Այսպիսին է օրենքը, իմ խե՜ղճ Մագի, բայց մի քիչ էլ սպասենք:

Մագին նորից դունչը դրեց տիրոջ ծնկներին: Մյուս շները գռմռում էին խավարում:

— Թող մի նայեմ քեզ, շնի՛կ: Առանց քեզ դատարկ կլինի շուրջս, փոքրի՜կս: Տաքացրած ձյունով ինչքա՞ն կարելի է դիմանալ: Այժմ պառկի՛ր, սպասենք մինչև երեկո:

Երբ իջավ երեկոն, մարդը քնած էր: Նրան արթնացրին շները: Որմնաթախտի տակ մի շուն կրծած հին ոսկոր էր գտել և վրա ընկած կատաղությամբ կրծում էր: Մարդը տեղից ցատկեց, բայց կրկին նստեց քնապարկում, որմնաթախտի եզրին: Կտրուկ շարժումից կատաղորեն բաբախում էր սիրտը: Նա բղավեց, և շները լռեցին: «Չէ, այսպես չի լինի,— ասաց ինքն իրեն:— Սպասելն արդեն իզուր է: Ժամանակն է»:

Նա վառեց բնաճարպե մոմը և հրացանը վերցրեց: Դժվար է կրակել այդպիսի լուսավորության տակ, բայց ի՞նչ կարելի է անել: Մագին հանգիստ քնած էր վառարանի մոտ: Պետք է շտապել, չձգձգել: Նա քաշեց ձգանը, և փոքրիկ խրճիթը ցնցվեց կրակոցից: Հետո նա նստել էր կարծես թմրած: Կրակոցը ցնցել էր նաև նրան: Նա մեկնեց ձեռքը և շանը մոտ քաշեց: Անսպասելիությունից մարմնով սարսուռ անցավ. սպանվածը Մագին չէր, այլ՝ Պոլը, ամենաուժեղ և հիմար շներից մեկը: Լավագույն լուծ քաշողը:

Մագին թաքնվել էր որմնաթախտի տակ: Նա պառկել էր մյուս շների ետևը և գլուխը թաքցրել անկյունում: Երբ որսորդը նրան դուրս հանեց այդտեղից, նա ողբալի կաղկանձում էր: Որսորդը Մագիին նորից նույն տեղը նետեց:

— Այսպե՜ս,— շշնջաց նա:— Դու ամեն ինչ հասկացար, և մինչ ես քնած էի՝ տեղդ փոխեցիր: Խելք է պետք ամեն բանի համար, նույնիսկ այստեղ, այս խղճուկ խրճիթում:

* * *

Երկու օր անց, մարդը նստել էր գետնին և ծածկվում էր ձյունով: Շան մսով կազդուրվելով, նա իրեն ուժեղ զգաց և չսպասելով մրրիկի վերջանալուն՝ ճանապարհ ընկավ: Բայց իր ուժերը ճիշտ չէր գնա-

հատել և շուտով թուլություն զգաց: Հետո մոլորվեց, կորցրեց ճանապարհը և շարժվում էր առանց մտածելու: Երկա՞ր գնաց, մինչև մթնեց և նա լրիվ ուժասպառ եղավ: Հետո դիպավ ինչ-որ բանի ու ընկավ, անզոր այլևս շարունակելու ճանապարհը: Կարողացավ միայն բարձրանալ, նստել ձյան վրա: Զգաց, որ սկսում է ննջել:

Մարդը մեջքը դարձրել էր քամու կողմը: Նա լրիվ ծածկվել էր ձյունով և նման էր ձյունածածկ քարի: Նստել էր կիսաքուն և մրսում էր: Մոտը ոչ ոք չկար: Շները սահնակի հետ առաջ էին սլացել: Մագին չէր ուզում տիրոջը լքել, հաչում էր ու ոռնում, բայց մյուսները նրան իրենց հետ տարան:

Ուշ երեկո էր և լրիվ մթնել էր: Մարդը մրսում էր: Բայց այս ի՞նչ է. ինչ-որ մեկը խղճալի հաչոցով քերում է մեջքը: Մագին է: Նա այդ զգաց կիսաքուն վիճակում: Շունը կրծել կտրել էր լծափոկը, որպեսզի տիրոջ մոտ վերադառնա: Մագին նրան հանգիստ չի թողնում. ճանկերով քերում է ձյունը, ծգում և պատռում է հագուստը, հաչում է և սարսափելի աղմուկ բարձրացնում:

— Պառկի՛ր,— վերջին ուժերը հավաքելով՝ կատաղորեն գոռաց մարդը: Շունը սակայն չէր հանգըստանում: Նա մարդուն պառկեցրեց մեջքի վրա և սողում էր շուրջը՝ փորձելով մի հարմար տեղից բռնել: Մարդու անքնությունն անցավ, բայց անասելի թուլություն էր զգում: Նա կատաղությունից և անզորությունից հեկեկաց: Մեքենայաբար, դժվարությամբ ոտքի կանգնեց և շարժվեց շան ետևից:

— Սպասի՛ր ինձ,— հեծկլտոցով ասում էր նա,— միա՞յն թե սպասիր...

Բայց Մագին անընդհատ առաջ էր գնում: Ետ նայելով և հաչելով, պոչով ավլելով ձյունը, նա մարդուն քայլ առ քայլ տանում էր իր ետևից: Աստիճանաբար մարդու քայլերը դառնում էին ավելի հստակ: Մագին սկսեց դանդաղ վազել՝ մերթ ընդ մերթ ետ նայելով: Լծափոկը փաթաթվում էր շանը: Մարդը վերցրեց և փաթաթեց իր ձեռքին:

— Քայլի՛ր առա՛ջ, Մագի՛,— խստորեն հրամայում էր նա շանը:— Ես ճանապարհը չգիտեմ: Տա՛ր, ուր ուզում ես:

Լարումից վնգստալով, շունը ծգում էր լծափոկը: Մարդը խավարի մեջ հետևում էր նրան:

Ինչքա՞ն թափառեցին, ինչքա՞ն գնացին, մարդը երբեք չի իմանա: Գուցե և գնացին ոչ այնքան հեռու, գուցե՝ միայն մի քանի կիլոմետր, բայց գուցե և՝ մի քանի հարյուր մետր:

Միայն այն իմացավ, որ երկուսով ինչ-որ բանի կպան: Սահնակն էր, որի կողքին պառկած էին մյուս շները, իսկ քիչ այն կողմ երևում էր որսորդական տնակը: Նա չորեքթաթ սողաց դեպի տնակը և ներսում խարխափելով լուցկի ու մոմ փնտրեց: Գտավ լամպը, փայտ, ածուխ և շատ մթերք:

Շուտով սենյակը տաքացավ և բուրեց հոտավետ սուրճը:

— Մագի՛,— ասաց մարդը,— ինձ թվում է, թե ինչ-որ բան հիշում եմ, բայց ոչ այնքան պարզ: Շատ լավ էր, որ տեղդ փոխել էիր Պոլի հետ: Լավ է, որ դու ավելի խելացի ես, քան ես: Արի այստե՛ղ, Մագի՛:

Շունը սակայն կատաղորեն գոռալով ոսկոր էր կրծում և փայլուն ատամները ցույց տալիս տիրոջը:

Թարգմ. ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑԻ



Երկար տարիներ ես մի առ մի հավաքել, ի մի եմ բերել այն, ինչ այժմ, համոզվելուց հետո, ուզում եմ պատմել: Սակայն հենց սկզբից ասեմ, որ այդպիսի բաների մասին քչերն են խոսում՝ այլազգիները հազվադեպ են ականատես լինում, իսկ աֆրիկացիները աշխատում են լռության մատնել:

1932 թվականին Հարավային Կամերունում բրիտանական կառավարության պաշտոնական ներկայացուցիչն էր Ն. Հ. Կլեվերլին, որը և առաջին անգամ ինձ պատմեց մի այսպիսի դեպք:

Մի օր տեղական ոստիկանության սերժանտը Իբիբիո շրջանից վերադառնում է Կլևերլիի պաշտոնավայրը և զեկուցում նրան, որ որոշ գյուղերում գործերը լավ չեն՝ աֆրիկացիները հրաժարվում են հարկ վճարել: Կլևերլին հրամայում է շրջանային ապային հետաքննություն կատարել: Նա էլ շատ զբաղված լինելով, իր հերթին հրամայում է տեղակալին, իսկ տեղակալը՝ կադետին: Տեղացի մի սերժանտի ուղեկցությամբ կադետը նավակով ուղևորվում է Իբիբիոյի նահճոտ վայրերը, որտեղ կմոլորվեր ամեն ոք, եթե տեղացի չլիներ: Ցամաք դուրս գալով, ճեղքելով խիտ թփուտները, նրանք հասնում են հարկ չվճա-





# ՋՐՈՒՄ ԱՊՐՈՂ ՄԱՐԴԻԿ

*Ա. ՍԱՆԴԵՐՍՈՆ*

րող գյուղերից մեկը: Գյուղը գտնում են ամայի, ոչ գյուղացիները կան, ոչ էլ նույնիսկ նրանց շներն ու կապիկները: Զարմացած և անհանգստացած կադետն ու սերժանտը ուղևորվում են մյուս գյուղը, բայց այնտեղ էլ ոչ ոք չի լինում: Նույն վիճակն է տիրում նաև մյուս երկու գյուղերում: Բոլոր այդ բնակավայրերը գտնվում էին կղզու վրա և շրջապատված էին գետերով ու վտակներով: Կադետը մտածում է, որ բնակիչները կարող են միայն նավակներով անհետացած լինեն: Նա տարբեր արահետներով ուղարկում է իր մարդկանց, իսկ ինքը նավակով շրջանցում ամբողջ կղզին՝ օրենքը խախտողներին բռնելու համար: Որոնումները ոչ մի արդյունք չեն տալիս: Նախ՝ որքան էլ որ տարօրինակ լինի, ափը լի էր նավակներով, տեղում միայն մի փոքր նավակ չկար: Զայրացած սերժանտը որոշում է թուփ առ թուփ պրպտել կղզին: Այնտեղ էլ ոչ ոք չի լինում: Սերժանտը հուսահատվում է: Նա թույլտվություն է խնդրում հանել համազգեստը և տեղացու նման հագնվել՝ մտադրվելով հասնել մոտակա գյուղը և նրանցից հարցնել «փախստականների» մասին: Ճանապարհին նա հանդիպում է հեռավոր ուղևորությունից վերադարձող մի քանի բնիկների: Նրանք հայտարարում են, որ կատարվածի մասին ոչ մի տեղեկություն չունեն: Դրան անհնար էր հավատալ, որովհետև աֆրիկացիները որքան էլ որ խորանում են անտառներում, միշտ էլ տամտամի ազդանշաններով կապ են պահպանում հարազատ գյուղի հետ: Սերժանտը ահաբեկում է նրանց, և նրանք խոստովանում են, թե որտեղ են թաքնվել գյուղի բնակիչները:

Կղզի վերադառնալով, նրանք հազիվ նշմարվող արահետով մոտենում են գետին: Այնտեղ ո՛չ նավակ է լինում, ո՛չ նավակայան: Ջուրը, ի տարբերություն շրջակա տիղմոտ վտակների, թափանցիկ էր: Ուղեկցողները խորհուրդ են տալիս սերժանտին պառկել գետի զառիթափ ափին ու նայել ցած: Այդպես էլ անում է և ինչ է տեսնում. գյուղի ամբողջ բնակչությունը՝ տղամարդիկ, կանայք, երեխաներ, մեջքով ափին հենված նստած են գետի հատակին և թվում է՝ քնել են: Շներն ու ընտանի կապիկները պառկած են նրանց կողքին՝ զամբյուղների մեջ: Սերժանտը խորամանկորեն համոզում է գերիներին գյուղ վերադառնալ, որտեղ նրանց կապում են ու թողնում դատարանի երկու կատարածուների հսկողության տակ: Հետո սերժանտը կադետին ափ է առաջնորդում: Գյուղի բնակիչներին տեսնելով 2,5 մ խորության ջրի տակ, կադետը սերժանտին հրամայում է սուզվել և արթնացնել նրանց: Սերժանտը անօգուտ կերպով հրմշտում է ջրի տակ նստածներին, բայց նրանցից ոչ ոք չի արթնանում: Նրանք բոլորը լիանաներով փաթաթված էին ծառերի արմատներին: Այստեղ երիտասարդը կորցնում է ինքնատիրապետումը, նետվում է դեպի իր նավակը և, սերժանտին որպես ավագ թողնելով տեղում, սլանում դեպի Կալաբար: Դա չպետք է վախկոտություն համարել: Պարզապես նա ուզում էր ղեկավարությանը տեղյակ պահել կատարվածի մասին: Հնարավոր է, որ նա ցանկանում էր հետագայում ևս մի սպիտակամորթի վկայակոչել: Նրա զեկույցը բացասաբար չընդունվեց: Պաշտոնական թղթերում այդ մասին գրված է, որ կադետը անտառ վերադարձավ շրջանի պետի օգնականի և այլ պաշտոնյաների հետ, բայց մինչև վկաների նոր խումբը տեղ կհասներ, սերժանտը բոլորին քշել էր աշխատելու և հարկը գանձել: Կադետը կամ շտապելուց սերժանտին չէր հրամայել բնիկներին ջրի տակ պահել մինչև իր վերադարձը, կամ

էլ սերժանտը չէր հետևել նրա հրամանին, մյուս կողմից էլ հենց իրենք՝ քնիկները, լսելով ոստիկանների կողմից բանտարկված իրենց եղբայրակիցների ազդանշանը, կարող էին սպիտակամորթի հեռանալուն պես, ջրից դուրս եկած լինել:

...Ես մի ընկեր ունեմ՝ Ջեֆրի Գորերը՝ հայտնի սոցիոլոգ և ընդհանրապես խիստ հետաքրքիր մի անձնավորություն: Ահա թե ինչ պատմեց նա ինձ: Մի անգամ նա Սենեգալ է մեկնում մի տեղացու հետ: Տեղ հասնելուն պես, ուղեկիցը ասում է, որ կուզենար նրան ցույց տալ ժողովրդական մի սովորույթ: Նրանք նավակով ծով են դուրս գալիս: Ծովի ալիքների վրա տարուբերվում էին բազմաթիվ նավակներ: Ջկնորսները մեկը մյուսի ետևից ոստրեներով ու խեցգետիններով լի զամբյուղներ են հանում ջրից, իսկ ծովի հատակին տեղացիները շրջում են այնպես, ինչպես մեր կողմերում մորի են հավաքում՝ կռանում և ոստրեները լցնում են վերևից պարանով կախված զամբյուղների մեջ: Միակ տարբերությունն այն է, որ նրանց թիկունքին քար էր կապված, որպեսզի խորասուզված մնան: Ջկնորսները նրան բացատրում են, որ սուզորդներից յուրաքանչյուրը ջրի տակ մնում է մոտ կես ժամ: Ես հարցերի տեղատարափ թափեցի Ջեֆրիի գլխին, իսկ առաջին հարցը այն էր, թե ինչպես է, որ ոստրեներ հավաքողները կարողանում են այդքան երկար ջրի տակ մնալ:

— Նրանք ինչ-որ բան են խմում սուզվելուց առաջ:

Անձամբ ես միշտ էլ կասկածանքով եմ վերաբերվում այդ կարգի բացատրություններին, երբ աշխարհում ամեն ինչ ձգտում են բացատրել «դեղ» խմելով: Բայց պետք է խոստովանել, որ դրանում թերևս ինչ-որ ճշմարտություն կարող է լինել, մանավանդ, որ այլ բացատրություն չկա: Այսպիսով, «ստորջրյա ընքուսանքը» կարող է լինել որևէ «դեղամիջոցի» օգտագործման արդյունք, սակայն բոլոր մարդիկ, որոնց հետ ես զրուցել եմ այս թեմայով, և մասնավորապես Արևմտյան Աֆրիկայի բնակիչները, ավելի շատ հակված էին դա բացատրելու այն երևույթով, որը սխալմամբ հիպնոս են անվանում: Այդ ենթադրությունը ավելի հավանական է թվում իմ նկարագրած առաջին դեպքի համար, երբ մարդիկ ջրի տակ իրենց պասսիվ են պահում: Ընդ որում կարծես թե ժամանակն է մի քանի խոսք ասելու ոչ մասնագետների կողմից «հիպնոս» անվանվող երևույթների մասին:

Դերվիշների այն տրյուկը, երբ ամբոխի ներկայությամբ թաղվելուց հետո կենդանի դուրս են գալիս գերեզմանից, նորություն չէ: Կան բազմաթիվ պաշտոնական վկայություններ: Հենց իմ արխիվում պահպանվել է բրիտանական գաղութային ծառայության հինգ առաջնակարգ բժիշկների պաշտոնական զեկույցի պատճեն: Հասարակության առաջ հանդես է եկել մի մեքսիկացի՝ թերևս հնդկական ծագում ունեցող: Մանրազնին բժշկական քննությունից հետո նա 24 ժամով թաղվել է: Նրա «շիրիմին» երկու բեռնատար ավտոմեքենա կավ են լցրել: Դա կատարվել է Գոնդուրասի մայրաքաղաքի կենտրոնական հրապարակում, ամբողջ բնակչության աչքի առջև: Բժիշկ Ռեկս Հևերտոնն ասաց, որ իր կարծիքով դերվիշին չի կարելի համարել կատալեպտիկական վիճակում, այսինքն, օրգանիզմի անզգայացման վիճակում, չնայած որ զարկերակը չափազանց թույլ էր և շնչառությունն աննշմար: Ես չգիտեմ, արդյո՞ք դերվիշը ժամանակավորապես ընդհատել էր շնչառությունը, թե՞ նվազեցրել էր այն աստիճան, որ նույնիսկ փորձված բժիշկը չէր զգում՝ շնչո՞ւմ է, թե՞ ոչ: Բայց այդպես նա ապրել էր 24 ժամ: Իսկ եթե դերվիշը կարողացել էր այդ անել, ինչո՞ւ այդ արվեստին չպիտի կարողանար տիրապետել ամբողջ գյուղը, չէ՞ որ ստրկավաճառներից միշտ այնպես խուսափելու միանգամայն միջոցը ջրի տակ թաքնվելն էր: Իսկ ինչպե՞ս էին անում ծովի աղի ջրի մեջ խեցգետիններ հավաքողները: Այստեղ արդեն, հավանաբար, օրգանիզմի ոչ մի անզգայացում էլ չկա, եթե իհարկե...

Իզուր չէ, որ այդ մարդկանց ինձ ցույց տվողը աֆրիկացի էր: Նա կարծես ի միջի այլոց ասաց, որ նրանց հայտնի է արյան հոսքը դանդաղեցնելու եղանակը, նրանք կարողանում են կարգավորել արյան շրջանառությունը: Ես ինքս էլ ականատես եմ եղել դեպքերի, երբ մարդիկ կանգնեցրել են իրենց արյան հոսքը: Իմ մի դպրոցական ընկերը սեղանի մոտ զվարճության համար ձեռքի վրա դանակով կտրեց իր անվան ու ազգանվան սկզբնատառերը: Արյունահոսությունը բոլորին անհանգստացրեց, բայց նա հայտարարեց, որ հիմա արյունը կկանգնեցնի: Այդպես էլ արեց: Անձեռոցիկով խըփեց վերքին, և արյունը իսկույն կանգ առավ՝ մնաց միայն խորը վարդագույն կտրվածքը: Ուշ երեկոյան վերքը արդեն չոր էր ու անարյուն:

Մի խոսքով, ես համաձայն եմ, որ այս դեպքերի համար որպես բացատրություն կարող են ծառայել և՛ կատալեպսիսը, և՛ օրգանիզմի այս կամ այն կենսագործունեության վերահսկումը, միայն թե, ճիշտն ասած, չեմ կարողանում հասկանալ, թե որտեղից սենեգալցի ձկնորսներին այնքան էներգիա, որ կարողանում էին դիմանալ լարված ստորջրյա կյանքին: Սակայն ինձ համար ամենամեծ դժվարությունը կայանում է նրանում, որ չեմ կարողանում գտնել Արևմտյան Աֆրիկայի մի բնակչի, որը ինձ լրացուցիչ տեղեկություններ հաղորդի: Կարելի է ենթադրել, որ այդպիսի պատմությունները անսահմանափակ հնարավորություններ են ընձեռնում փչաններին և «որսորդական» պատմությունների սիրահարներին: Գուցե դա չափից ավելի մեծ սուտ է, բայց կարող է նաև... ճշմարիտ լինել: Բոլոր դեպքերում ես պնդում եմ, որ այդ դեպքերի հետ կապված ամեն ինչ պետք է շատ ուսումնասիրության ենթարկել:

Թարգմ. ՅՈՒՐԻԿԻ ՍԱՐԳՍՅԱՆԻ



# ՊԱՅՔԱՐ ՋՐԵՐԻ ԹՈՒՆԱՎՈՐՄԱՆ ԴԵՄ

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
կենսաբանական գիտությունների դոկտոր

«Կուրյեր Յունեսկոյի» այս տարվա առաջին համարում մի հետաքրքիր ծաղրանկար կար։ Նավաբեկությունից ազատված երկու ծովագնացներ ռետինե լաստով թափառում են ծովում, ցամաք տեսնելու ակնկալությամբ։ Նրանցից մեկը հանկարծ նկատելով նավթից սևացած ջրերը, ուրախացած գոչում է. «Մի տե՛ս հապա, մենք մոտ ենք քաղաքակիրթ աշխարհին. չէ՞ որ սա նավթ է»։

Սա դառը ճշմարտություն է, ներկայումս երկրագնդի ջրային տարածությունները անհավատալիորեն աղտոտված են ոչ միայն նավթամթերքներով, այլև զանազան վնասակար քիմիական նյութերով, որոնք աստիճանաբար ոչնչացնում են օվկիանոսների, ծովերի, լճերի ու գետերի կենդանական ու բուսական աշխարհը, ջրերը դարձնում անկենդան ու թունավոր։

Մեր հիշողության մեջ դեռևս թարմ է Կալիֆոռնիայի ափերի մոտ, Սանտա Բարբարա նեղուցում «Տերրիկանոն» հեղուկանավի խորտակման աղետալի դեպքը։ Հսկայական տարածության վրա օվկիանոսը ծածկվեց նավթի հաստ շերտով։ Դա մեծ քանակությամբ ծովային կենդանիների՝ կետերի, փոկերի և հատկապես թռչունների ոչնչացման պատճառ հանդիսացավ։

Միայն 1971 թվականին ամբողջ աշխարհի ծովերով տեղափոխվել է մեկ միլիարդ տոննա նավթամթերք։ Եթե նույնիսկ ընդունենք, որ այդ քանակության միայն մեկ տոկոսն է թափվել ծովերը, ապա կստացվի 10 միլիոն տոննա։ Ամենից շատ աղտոտված են Միջերկրական ծովը, Ատլանտյան օվկիանոսի արևելյան ափերը և Հյուսիսային ծովը։ Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ տարեցտարի ծովերով նավթամթերքների տեղափոխման ծավալը մեծանում է։ 1975 թվականին ամբողջ աշխարհի ծովերով տեղափոխվելիք 1650 միլիոն տոննա նավթամթերքներից 360 միլիոնը պետք է տեղափոխվի Միջերկրական ծովով։ Դրանից 4 միլիոն տոննան բաժին կընկնի քաղաքակիրթ աշխարհի կենտրոնին։

Ծովերի աղտոտման հետևանքով նվազում է ֆիտոպլանկտոնի ֆոտոսինթետիկ ինտենսիվությունը։ Դրանից էլ կախված է զոոպլանկտոնի մթերատվությունը։ Վերջինս, ինչպես հայտնի է, ծովային կենդանիների կյանքի հիմնական աղբյուրն է։ Դրա հետևանքով խախտվում է ծովերի կենսաբանական ռիթմը և ծովային որոշ կենդանիներ արդեն սկսել են իսպառ ոչնչանալ։

Աղտոտված ծովերի առաջին զոհերը դարձան ծովային թռչունները։ Քանի որ ծովաջրերը ծածկված են նավթի համատարած թաղանթով, ապա թռչունները երբ իջնում են ջրերի վրա, հանգստանալու և սնվելու նպատակով, նրանց փետուրները ծածկվում են նավթի բարակ շերտով։ Այդ էլ բավական է, որպեսզի փետուրները կորցնեն իրենց անջրաթափանցիկ և ջերմամեկուսիչ հատկությունները։ Դրանից թռչունները իսկույն սատկում են, քանի որ փետուրների ջերմականոնավորիչ հատկության կորուստը մահացու է նրանց համար։ Բացի այդ, եթե փետուրները թրջված են, ապա նրանք ընդհանրապես թռչել չեն կարող։ Մի քանի տարի առաջ Նյուֆաունդլենդում առափնյա շերտի յուրաքանչյուր մղոնի վրա գիտնականները հաշվեցին ծովային թռչունների 1200 դիակներ, որոնց ոչնչացման պատճառը նավթամթերքները էին։

Իսկ ինչպե՞ս է նավթը հոսում դեպի ծովերը։ Դրա հիմնական պատճառը նավաբեկումներն են, աղետները։ Բացի այդ, հեղուկանավերը բեռնելու և բեռնաթափելու ժամանակ նավթի որոշ մասը անխուսափելիորեն թափվում է ծովը։ Երբ հեղուկանավերը բեռնաթափում են, նավթի որոշ մասը մնում է նավամբարներում և, գոլորշիանալով, պայթյունի վտանգ է առաջացնում։ Այդ պատճառով անհրաժեշտ է ծովաջրերով լվանալ նավթամբարները և ջուրը թափել։ Դատարկ հեղուկանավերը դժվար է ղեկավարել, և ահա նավապետները նավի բեռնատարողության 40-ից 60 տոկոսի չափով ջուր են լցնում նավամբարները, որը նույնպես հագենում է նավթով և ապա թափվում օվկիանոս։

Օվկիանոսները և ծովերը աղտոտվում են նաև գետերի բերած թունավոր նյութերով։ Դժվար չէ պատկերացնել, թե աշխարհի գետերը տարեկան որքան այդպիսի նյութեր են իրենց հետ տանում դեպի համաշխարհային օվկիանոս։

Որպեսզի պատկերացնենք, թե ինչ աստիճանի են երբեմն աղտոտվում քաղցրահամ ջրերը, բերենք Հյուսիսային Ամերիկայի մեծ լճերի օրինակը։



# ՊԱՏԱՆԻ ՄԱԹԵՄԱՏԻԿՈՍԸ

Արամը փոքր էր, դեռ դպրոց չէր գնում: Նա տանը իր խաղալիքներով ինքն իր համար խաղում էր: Իսկ հայրն այդ ժամանակ եղբորը օգնում էր թվաբանական վարժությունները լուծել: Հայրը աշխատում էր խնձորի, տանձի օրինակով սովորեցնել Արամի դպրոցական եղբորը հանման, բաժանման ու թվաբանական մյուս գործողությունները:

Արամը ակամա հետևում էր նրանց խոսակցությանը և սկսում էր մտածել ասվածի մասին: Որոշ ժամանակ անց նա կարողանում էր եղբորից արագ պատասխանել տրված հարցերին: Եղբայրը դասարանից-դասարան էր փոխադրվում, իսկ Արամը նրա հետ սովորում էր ավելի ու ավելի բարդ վարժություններ լուծել: Առաջին դասարանում նա առանց դժվարության լուծում էր մինչև երրորդ դասարանի բոլոր խնդիրներն ու վարժությունները:

Չորրորդ դասարանում նա առաջին անգամ մաթեմատիկայի գծով մասնակցեց Արտաշատի շրջանի օլիմպիադային: Եվ այն էլ՝ հինգերորդ դասարանի ծրագրով: Հանձնաժողովը փորձեց առարկել, որ դա նախ կանոնների խախտում է, և հետո՝ պատանու ուժերից վեր է: Առանց այդ էլ օլիմպիադայի հարցերը հինգերորդ դասարանի ծրագրից ավելի բարդ էին: Բայց բացառություն արին, նրան թույլ տվեցին մասնակցել մրցույթին: Առաջադրված հարցերին շատ շուտ պատասխանեց ու դուրս գնաց: Արդյունքները ամփոփելիս, ի զարմանս հանձնաժողովի, պարզվեց, որ նա լավագույն եղանակով է կատարել առաջադրանքը և, պարզ է, առաջին տեղին է արժանացել:

---

*Ինչպես ցույց են տվել դոկտոր Արթուր Հեկսլերի բազմամյա ուսումնասիրությունները, արդյունաբերական թափթփուկները արդեն այն աստիճան հագեցրել են Վերին, Միչիգան, Հուրոն, Էրի և Օնտարիո լճերը, որ դրանք դարձել են մեռյալ: Լճերի որոշ շրջաններում կյանքը իսպառ ոչնչացել է, իսկ մնացած մասերում դեռևս ապրում են միայն ամենադիմացկուն կենդանիներն ու բույսերը: Ամռանը ջրի գարշահոտությունը տարածվում է տասնյակ կիլոմետրերի վրա, տեղ-տեղ լիճը ծածկված է փրփուրով, որը կենսաբանական պրոցեսների խիստ թուլացման կամ լրիվ դադարման նշան է: Լճի ջրերը զրկվել են թթվածնից: Ջրում լողանալ այլևս չի կարելի: Վերջերս մի քանի նեգր երեխաներ ջրից մի ձմերուկ հանեցին և կերան հենց լճի ափին: Ձմերուկը այնքան էր ներծծված զանազան վտանգավոր քիմիական նյութերով, որ երեխաներից երկուսը մահացան տեղում, իսկ մյուսների կյանքը հազիվ հնարավոր եղավ փրկել: Դոկտոր Արթուր Հեկսլերի կարծիքով լճերը անդառնալիորեն դուրս են եկել կենսաբանական շրջանառությունից և դրանց «վերակենդանացնելը» ԱՄՆ-ի համար ավելի կարևոր պրոբլեմ է, քան լուսնի վրա մարդ իջեցնելը:*

*Դեռևս 1950 թվականին հայտնի էր, որ Մեծ լճերին մահացու վտանգ է սպառնում, եթե չմաքրվեն լճերը թափվող արդյունաբերական ջրերը: Սակայն ԱՄՆ-ի կառավարությունը ոչ մի վճռական միջոցների չդիմեց: Կապիտալիստները մտածում էին միայն օրվա շահույթի մասին: Նրանք «ավելորդ» դոլարներ չգտան լճերը փրկելու համար:*

*Մինչդեռ երբ քննարկվում էր Սևանի ափերին ոսկու հարստացուցիչ ֆաբրիկա կառուցելու հարցը, մեր գիտնականները խիստ անհանգստացան: Չէ՞ որ գործարանի աղտոտ ջրերը մի քանի տարվա ընթացքում Սևանը կդարձնեն մեռյալ լիճ: Իսկ դրա հետևանքով կթունավորվեն Հայաստանի սառնորակ աղբյուրները: Հրազդանը այլևս պիտանի չէր լինի գյուղատնտեսական կուլտուրաների ոռոգման համար: Եվ մեր կառավարությունը որոշեց հսկայական ծախսերի գնով հումքը տեղափոխել Արարատի շրջան ու այնտեղ վերամշակել այն, որպեսզի փրկվի Սևանը:*

*Աղտոտված ջրերի մաքրման պրոբլեմը այժմ օրակարգի հարց է դարձել: Պետք է հուսալ, որ աշխարհի բոլոր երկրներում ակտիվ միջոցառումներ կձեռնարկվեն բնության պահպանության այդ կարևոր հարցը հաջողությամբ լուծելու համար:*

---

ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

## ԳԼՈՒԽԸ

Ու օձին դիմեց
Հազարոտանին.
— Դու ոտեր չունես,
Սատանան տանի:
— Բայց գլուխ ունեմ,
Գիտեն շատերը...
Անգլուխ՝ ի՞նչ են
Հազար ոտերը:

Օլիմպիադական գրոհը շարունակվեց մինչև յոթերորդ դասարան: Հետաքրքիրն այն էր, որ Ազատավանի դպրոցի սանը ամեն տարի օլիմպիադաների է մասնակցել մեկ դասարան բարձր ծրագրով:

— Միայն յոթերորդ դասարանում մասնակցեցի իմ դասարանին համապատասխան ծրագրով: Ինչպես բոլոր նախորդ, այնպես էլ այդ օլիմպիադայում առաջին տեղը գրավեցի: Հանրապետական մրցումներում առաջին մրցանակի ոչ ոք չարժանացավ: Ես երկրորդ տեղը գրավեցի,— մեղավոր ժպտալով պատմում է Արամը:

Օլիմպիադական հաղթարշավներից ամենահետաքրքիրը, թերևս, այս տարվանն էր: Քիշնևում կազմակերպված դպրոցականների համամիութենական օլիմպիադայում առաջադրանքները համեմատաբար ավելի շատ և դժվար էին:

Արամը աշխատեց առաջին խնդիրը լուծել բոլորովին նոր եղանակով և ստացվեց: Առաջադրանք էր տրված կազմել խնդիր, որի մեջ օգտագործվի 1978 թիվը: Դա էլ կատարեց յուրովի: Սակայն դրա վրա շատ ժամանակ կորցրեց և հետո չկարողացավ գործը ավարտին հասցնել: Զայրացած ու ինքն իրենից դժգոհ, թողեց դուրս գնաց:

Սակայն այնքանն էլ, ինչ հասցրեց անել, գրավեց հանձնաժողովի անդամների ուշադրությունը: Նրանք գտան, որ բոլոր մասնակիցներից ամենաառաջավոր, ամենաուշագրավ եղանակով լուծողը Արամ Հարությունյանն էր: Բայց քանի որ առաջադրված բոլոր հարցերին չէր պատասխանել, մրցանակային տեղի չարժանացավ: Դրա փոխարեն հանձնաժողովը, հաշվի առնելով մաթեմատիկայի ասպարեզում նրա ցուցաբերած փորձն ու գիտելիքները, նրան խրախուսական մրցանակ շնորհեց:

Այս հաջողություններին հասնելու համար Արամին օգնում են «Մաթեմատիկան դպրոցում», «Քվանտ», «Մաթեմատիկան և ֆիզիկան դպրոցում», ինչպես և հանրապետական ու միութենական այլ ամսագրեր, որոնց ոչ միայն ակտիվ ընթերցողն է նա, այլև՝ թղթակիցը:

Միայն մաթեմատիկան չէ, որ գրավում է Արամին: Նա արտակարգ աշխատասիրություն ու եռանդ է ցուցաբերում նաև դպրոցում գործող այն առարկայական ու մարզական խմբակների պարապմունքներին, որոնց մասնակցում է: Շախմատի գծով երկրորդ կարգ ունի և երազում է մինչև դպրոցն ավարտելը դառնալ առաջին կարգի շախմատիստ:

Թող իրականանան նրա այդ ու մյուս երազանքները: Չէ՞ որ դրանց հասնելու բոլոր նախապայմանները (գիտելիք, ցանկություն, աշխատասիրություն) ունի իններորդ դասարանցի Արամ Հարությունյանը:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*




## ՕՐ՝ ԱՌԱՆՑ ՄԱԹԵՄԱՏԻԿԱՅԻ



Այդպիսի օր անցկացվեց ամերիկյան Տվեսոն քաղաքի դըպրոցներից մեկում: Աշակերտներին և ուսուցիչներին այդ օրը արգելվեց հաշվումներ կատարել, օգտվել ժամացույցից և օրացույցից, ընդհանրապես թվերի հետ որևէ գործ ունենալ: Փորձը ցույց տվեց, թե ինչքան անհրաժեշտ է մաթեմատիկան: Մի քանի ժամ անց, աշակերտները համոզվեցին, որ առանց մաթեմատիկայի անհնար է ապրել:

## ԱՐՏԱՍՈՎՈՐ ԲՌՆԿՈՒՄ

Տիեզերական կայանների օգնությամբ Արևի վրա հայտնաբերվեց արտասովոր ուժի բռնկում: Նրա հզորությունը հավասար էր երկու հազար միլիոն մեգատոն ջերմամիջուկային պայթյունի էներգիային: Արևի խորքից մոտ հազար կմ/վրկ արագությամբ դուրս հորդացող գազերի ամպը ծավալով մեծ էր Երկրից, իսկ մասսան մեկ միլիոն տոննայից ավելի էր: Բարեբախտաբար, բռնկումն ուղղված էր Երկրի հակառակ կողմը, այլապես մեր մոլորակի վրա մի քանի օր, նույնիսկ ավելի, կընդհատվեր ռադիոկապը: Հնարավոր է, ինչպես ենթադրում են գիտնականները, որ այդպիսի ուժ ունեցող ալիքների հարվածից որոշ չափով կփոխվեր Երկրի շրջապատույտի ժամանակաշրջանը:

# ՁԵՌՆՈՑԻ ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ



*Ձեռնոցները վաղուց կենցաղային այնքան սովորական իր են դարձել, որ հազիվ թե որևէ մեկի մտքով անցնի հետաքրքրվել, թե երբ և ինչու սկսեցին ձեռնոցներ հագնել: Մինչդեռ դրանք շատ ուշագրավ պատմություն ունեն: Ամենահին ձեռնոցները գտնվել են 1350 թ. մ.թ.ա. մահացած Թութանհամոն փարավոնի դամբարանում: Այդ ձեռնոցները պատրաստված են կտավից և ծածկում են միայն մատները, քանի որ նախատեսված էին ծիսակատարությունների համար: Այստեղ կային նաև ձեռքի ափը ծածկող ձեռնոցներ, որոնք գործածվել են նետաձգության ժամանակ:*

*Թե ինչ նշանակություն ունեին ձեռնոցները հնագույն ժամանակների վարվելակարգում, հայտնում է հետևյալ փաստը. պարսիկ թագավոր Կյուրոսը մահվան դատապարտեց իր ազգականներին միայն այն պատճառով, որ նրանք համարձակվել էին առանց ձեռնոցներ հագնելու, մերկ ձեռքերով ներկայանալ իրեն:*

*Հույների մոտ ձեռնոցները միայն պաշտպանողական նշանակություն ունեին: Հայրենիք վերադառնալով, Ոդիսևսը հորը հանդիպում է այն պահին, երբ նա ձեռնոցներ հագած, փշոտ մոլախոտերից մաքրում էր այգին: Հռոմեացիները բացի վերոհիշյալից, ձեռնոցները գործածում էին ճաշի ժամանակ, քանի որ նրանց անհայտ էր պատառաքաղը: «Ձեռնոց» բառը առաջին անգամ գործածվում է անգլոսաքսերի էպիկական «Բեովուլֆ» պոեմում (VIII դար): Դրանք շատ գործնական նշանակություն ունեին. գոմը մաքրելիս ձեռքերը չկեղտոտել:*

*Ձեռնոցները լայն տարածում ստացան միայն XVI դարում, երբ հայտնագործվեցին կաշին դաբաղելու նոր եղանակներ: Հետագա դարերում ձեռնոցները նշանակալից փոփոխությունների չենթարկվեցին:*



# ՔԱՂԱՔ, ՈՐՏԵՂ ԱՐԵՎԸ ՄԱՅՐ Է ՄՏՆՈՒՄ ՕՐԸ ԵՐԿՈՒ ԱՆԳԱՄ

**Անգլիական Ստոֆֆորդ կոմսության Լիկե քաղաքում նկատվում է մի անսովոր երևույթ՝ մեկ օրվա ընթացքում արևը մայր է մտնում երկու անգամ: Լիկե քաղաքը գտնվում է գոգավորությունում և արևմուտքից շրջապատված է բարձր լեռներով: Այդ լեռները ջրի ազդեցության տակ սարսափելի փլուզումների են ենթարկվել: Գոյացել է մի խոշոր թունել: Արևը սկզբում թաքնվում է լեռների ետևում: Քաղաքում սկսվում է մթնշաղը: Բայց մի քանի րոպե անց նորից լուսավորվում է, այս անգամ լեռան արանքի թունելից նորից երևում է մայրամուտը: Քաղաքը նորից մի քանի րոպե լուսավորվում է մայրող արևի ճառագայթներով, որը շուտով անհետանում է:**

**Այսպիսով, Լիկե քաղաքի բնակիչները ականատես են լինում կրկնակի մայրամուտի:**

# ԿԵՆՑԱՂԸ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՆԵԼՈՒ ԵՎՍ ՄԵԿ ՆՈՐՈՒԹՅՈՒՆ

*Ատամի էլեկտրական խոզանակով այժմ արդեն ոչ ոքի չես զարմացնի։ Բայց գյուտարարների միտքը կանգ չի առնում՝ մարդկային կենցաղը էլեկտրիֆիկացնելու հարցերում դեռ բացեր կան։ Վերջերս ԱՄՆ-ում վաճառքի հանվեցին էլեկտրական պատառաքաղներ։ Այժմ թող ուրախանան սպագետի (մակարոնով ճաշ) սիրողները՝ այս պատառաքաղը հենց նրանց համար է ստեղծված։ Այն թեթևացնում է նրանց դժվարին աշխատանքը՝ երկար մակարոնները ատամիկներին փաթաթելը, որը բարեկիրթ լինելու նախապայման է համարվում։*





## ԾԽԵԼԸ ՎՆԱՍԱԿԱՐ Է ԲՈԼՈՐԻՆ ԵՎ ՄԱՆԱՎԱՆԴ՝ ԵՐԱԺԻՇՏՆԵՐԻՆ

«Աշխատեցեք չծխել»,— խորհուրդ են տալիս հանգիստ բնավորություն ունեցող բժիշկները:

«Ծխել չի՛ կարելի»,— բարձրաձայն հայտարարում են բուռն խառնվածք ունեցողները:

Չէ՞ որ ծխելը թուլացնում է հիշողությունը, դժվարացնում է սրտի աշխատանքը, նախապայմաններ է ստեղծում թոքերի ամենավտանգավոր հիվանդությունների համար:

Այս զգուշացումների հեղեղին վերջերս ավելացավ ևս մեկը: Ստույգ քննությունների միջոցով ապացուցվել է, որ նիկոտինը վատացնում է լսողությունը՝ ախտահարելով Եվստախյան խողովակները:

Սրան չհավատաց իր լսողությամբ հպարտացող մի մոլի ծըխող: Սակայն լսողությունը ստուգող սարքը ցույց տվեց. այդ ծխողի լսողությունը այլևս չի կարելի կատարյալ համարել:

Երբեմնի հիանալի լսողություն ունեցող երաժիշտների հետ կատարված փորձը (հրավիրված էին մի ջութակահար և մի կիթառիստ) հաստատեց, որ նրանց երաժշտական լսողությունը ծխելուց շատ է տուժել:

# ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

ԱՍՏՂԻԿ ԹԵՎԱՆՅԱՆ

Մի ծայրը՝ սուր,
Մյուսը՝ բութ,
Վրան՝ փոքրիկ
Մի լուսամուտ:

([illegible])

Ցերեկը՝ քնած,
Գիշերը՝ արթուն,
Կանչում է ծովում
Մոլորված մարդուն:

([illegible])

Կուլ է տալիս
Մի ողջ գնացք,
Դեռ մնում է
Բերանը բաց:

([illegible])

Ուսին գցած մետաքս թիկնոց,
Գդակը՝ ալ կրակ ու բոց,
Առանց սլաք ու թվացույց՝
Համարվել է նա ժամացույց:

([illegible])

## ԽԱՉԲԱՌ «ՔԱՂԱՔՆԵՐ»




Սկսելով փոքր մուգ շրջանից՝ պատասխանները լրացրեք ժամացույցի սլաքների շարժման ուղղությամբ:

1. Մարզային քաղաք՝ Սիբիրում, Տոբոլ գետի վրա:
2. Ածխի արդյունաբերության խոշոր կենտրոն՝ Դոնբասում:
3. Նավահանգիստ՝ Ենիսեյի վրա:
4. Ուկրաինական ՍՍՀ-ի նախկին մայրաքաղաքը:
5. Նավահանգիստ՝ Ֆիննական ծոցի ափին:

Պատասխանները ճիշտ լրացնելուց հետո, կենտրոնական շրջանում կկարդաք ռուս մեծ գրողի անունը կրող քաղաք:

Կազմեց ԳԵՎՈՐԳ ԳԱՍՊԱՐՅԱՆԸ







# ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐ ՊԱՏԱՆԻ

Վ. ԴԱՅԿՆԵՎԻՉ (Ակվարիումիստների Մոսկվայի քաղաքային ակումբի նախագահ)

Ակվարիում պատրաստելը, ջրով լցնելն ու այնտեղ ձկներ պահելը դեռևս քիչ է: Եթե չգիտեք հիմնական կանոնները, ապա շատ շուտով ջուրը կպղտորվի և ձկնիկները կոչնչանան:

Այդ կանոնները բարդ չեն և անհրաժեշտ է իմանալ:

Նախ և առաջ, ակվարիումում կենսաբանական հավասարակշռություն պետք է հաստատել: Սա նշանակում է, որ այն ամենը, ինչ գտնվում է ակվարիումում, պետք է փոխադարձ գոյություն ապահովեն:

Ինչպես հայտնի է, ձկները շնչում են ջրի մեջ լուծված թթվածնով: Թթվածինը թափանցում է ջրի մեջ ոչ միայն արտաքին մակերևույթից, այլև ակվարիումում աճող բույսերի շնորհիվ:

Բույսերին անհրաժեշտ են սնուցող նյութեր, որոնք բույսերը ստանում են ինչպես ջրից, այնպես էլ բնահողից: Նշանակում է, ակվարիումում, ձկնիկներից բացի, պետք է տեղադրել բույսեր ու գետի ավազ: Անպայման գետի և ոչ թե լեռնային: Լեռնային ավազի մեջ բույսերը վատ են աճում: Որքան ավազը խոշորահատիկ լինի, այնքան ավելի լավ: Բույսերը նույնպես «հատուկ» պետք է լինեն, այսինքն՝ պիտանի են միայն արևադարձային երկրներից ներմուծված բույսերը, որոնք կլոր տարին կանաչ են մնում: Մեր գետերի բույսերը ձմռանը ոչնչանում են:

Որպեսզի բույսերը լավ աճեն և արտադրեն բավարար քանակությամբ թթվածին, հարկավոր է լույս, բայց ոչ մի դեպքում չի կարելի ակվարիումը դնել լուսամուտին: Ամռանն այստեղ լույսը չափազանց առատ է և ջուրը կկանաչի ու կբազմանան մանրագույն ջրիմուռներ: Ձմռանը ընդհակառակը, ակվարիումը անթույլատրելի չափով կսառչի: Ուստի, առավել նպատակահարմար է ակվարիումը տեղադրել լուսամուտից հեռու և լուսավորել հատուկ էլեկտրական լամպով: 20-40 լիտր տարողությամբ ակվարիումի համար բավական է 20-40 վատտ հզորության էլեկտրական լամպը:

Եթե սենյակում տաք է և ակվարիումում ջրի ջերմաստիճանը չի իջնում 20°C-ից, ապա արհեստական ջեռուցումը պարտադիր չէ:

Ձկնիկների քանակը կախված է ակվարիումի տարողությունից: Չպետք է մոռանալ, որ յուրաքանչյուր ոչ մեծ՝ 5-6 սմ երկարության ձկնիկին անհրաժեշտ է 4 լիտր ջուր: Այս նորման ընդունելի է բոլոր ձկնիկների համար, բացառությամբ ոսկե ձկնիկների մի քանի տարատեսակների: Այս ձկնիկներին







պահում են 100 և ավելի լիտր տարողության մեծ ակվարիումներում:

Եթե ակվարիումը խիտ է բնակեցված և թթվածինը չի բավականացնում ձկնիկներին, նրանք սկըսում են լողալ մակերեսին մոտ և թթվածին են կլանում մակերևույթից: Այս դեպքում ջուրը օդով հագեցնելու համար անհրաժեշտ է տեղադրել միկրոկոմպրեսոր:

Շատ կարևոր է ձկնիկներին միանգամից չափից ավելի կեր չտալ: Ավելորդ կերը սկսում է փտել, և ջուրը փչանում է:

Կերակրել անհրաժեշտ է օրական մեկ կամ երկու

## ԱԿՎԱՐԻՈՒՄԻՍՏԻՆ

անգամ: Կերը պետք է տալ ոչ մեծ բաժիններով և պետք է անմիջապես դադարեցնել, եթե ձկնիկները այն այլևս չեն ընդունում:

Ցանկալի է տալ կենդանի կեր, եթե այն չկա, ապա կարելի է փոխարինել չոր կերով, բայց խըստորեն չափավորելով քանակը:

Այս ոչ բարդ կանոնները պահպանելու դեպքում, ակվարիումը ձեզ վշտանալու առիթ չի տա:




Թե ինչպես մուկը կատու բռնեց

Լույս է տեսնում 1928 թվականից:



# ՊԻՈՆԵՐ

№ 12 դեկտեմբեր 1973 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Բանաստեղծություններ — Ս. ԱՐԱՋՅԱՆ . . . . . . 2
Լենինը ենգիբարյան — Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ . . . . . 2
Մարիկն ու համին — Գ. ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ . . . . . 4
Քախորդը — Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ . . . . . . . 5
Բանաստեղծություններ — Վ. ԲԱԳՐԵՎԱՆԴՑԻ . . . . 6
Ակադեմիկոս Հակոբ Մանանդյանի կյանքն ու գործը.— Լ. ԽԱՉԻԿՅԱՆ . . . . . . . . . . 7
Երգիծական մանրապատումներ . . . . . . 10
Շունը հասկանում է,— ՅՈՆ ԵՎԵՐ . . . . . 12
Ջրում ապրող մարդիկ — Ա. ՍԱՆԴԻԵՐՍՈՆ . . . . . 15
Պայքար ջրերի թունավորման դեմ — Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ . 17
Պատանի մաթեմատիկոսը — Վ. ՄԵԽԱԿՅԱՆ . . . . 18
Գլուխը — Գ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ . . . . . . . 18
Ինչուկ . . . . . . . . . . . . . 19
Ժամանց . . . . . . . . . . . . . 21
Հանելուկներ — . . . . . . . . . . . 21
Խորհուրդ պատանի ակվարիումիստներին — Վ. ԴԱՑԿԵՎԻՉ 22
Զրոսաշրջիկ արջը — Խ. ՀՐԱՉՅԱՆ . . . . . . .

Շապիկի առաջին էջը՝
*Եկ. ՀՐԱՉՅԱ ԱՎԱՆԵՍՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (փոխ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:*
*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 09353 Պատվեր՝ 1348: Տպաքանակ՝ 79800: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 26/XI, 1973 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան—9, Տերյան փ. № 91:



ԳԻՆԸ՝ 10 կ.

ԻՆԴԵՔՍ՝ 77806.



# ՁԲՈՍԱՇՐՋԻԿ ԱՐՋԸ

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

Արջը դարձավ հեռու երկրից,
Իրար անցան դուռ ու դրկից.
— Եկա՜վ, եկա՜վ
Բրդոտ քեռին:
— Քանի՞ ճամպրուկ
Ունի ձեռին:
— Ի՞նչ վերարկու
Ունի հագին...
— Տեսնես ի՞նչ է
Բերել ձագին...

Ու գալիս են, անվերջ գալիս...
Ամեն եկող հարց է տալիս.
— Այն կողմերում
Ի՞նչ են անում:
Ո՞նց են դատում,
Ո՞նց են բանում...
— Այնտե՜ղ... այնտեղ
Ուզածիդ չափ
Կար ընտիր տանձ
Ու մեղրահաց:
— Ուրիշ ի՞նչ կար,
Բացի տանձից,
Մեղրահացից:
— Ուրի՜շ... ուրիշ...
Կար մեղրահաց:
Դրանից զատ,
Իհարկե, տանձ...

Նկ. ԲԱԳՐԱՏ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ